# ԹՈՒԿԻԴԻԴԵԱՅ

ՈՐԴԻՈՅ ՈՂՈՐԵԱՅ

# ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

# ՊԵՂՈՊՈՆԵՍԱԿԱՆ ՄԱՐՏԻՆ

ՅԵՂԵԱԼ Ի ՀԱՅ


## Հ. ԱԲՐԱՀԱՄՈՒ ՃԱՐԵԱՆ

ՅՈՒԽՏԷՆ ՄԽԻԹԱՐԱՅ







ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ Ս. ՂԱԶԱՐՈՒ

1887

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Որոց միանգամ՝ իմաստուն լինել ցանկացան՝ առ իմաստունս դեգերել ասացաւ. մինչ զի և առաւօտ անգամ՝ առնել առ դուրս նոցա։ Եւ զի բնաւորեալ է մարդ՝ քան առ ծանօթսն և մօտաւորս՝ առ անծանօթս և հեռաւորս յօժարել ընթանալ, թեթև համարելով զխոչ և զխութ և զերկարութիւն ճանապարհի, և բազում անգամ քան առ ժամանակակիցս իւր՝ առ վաղեմիս առ որս բազմամեայ ժամանակաւ կացին երբեմն իմաստունք՝ ցանկանալով իբրև ընդ կենդանիս տեսաւորել ընդ նոսա, ընդ գրեանն նոցա անցանել և յիմաստակիր ասացուածս նոցին պարապել։ Այս իղձ չեթող ինձ արհամարհել, կամ ամօթ համարել 'ի հեթանոսականս թարթափել մատեանս, զորս և գերազանցեալքն 'ի սրբոց Հարց յարգել գիտացին. և յօժարեալ եկի 'ի թարգմանութիւն Պատմութեան Պելոպոննեսականին Թուկիդիդեայ, առ գիտունս Եւրոպայ մեծահռչակ մատենագրի։ Եւ զի ամենայն գրոց վախճան է և նպատակ, իցէ և սորայս գլխաւոր կէտ նպատակի՝ հասարակաց մարդկայնոց կրից և ցանկութեանց տալ պատկեր ճշգրիտ. և իբրու 'ի հանդիսի անցուցանել ըզքաղաքագէտ որերոյն նրբահանճար խորհուրդս և

զօրէնս իմն տիրապետ վարչութեան, որով և պերճախօսից տալ ասպարէզ պարզելոյ ատենաբանութեամբ զկամս մտաց իւրեանց առաջի ամբոխին։

Ոչ միայն բովանդակութիւն բազմամեայ դիպաց պատմութեան մատենագրիս տայ զասացելոցս հաւաստիս, այլ և յառաջաբան տեսութիւնս զանձնէ նորա, զկենաց և զառաջիկայ վաստակոց աւանդէ պլիուլի վկայութիւն հաստատուն։

Եթէ չիցեն արդարև յազգիս յոքունք որ նրբախորհուրդ մեծի քաղաքագէտ հանճարոյն իմացուածոցն բանից ժամանիցեն հասանել 'ի վերայ, բայց իցեն արդեօք գոնեայ, որ պերճախօս ատենաբանութեանցն նախանձաւորք, եթէ ոչ ըստ մեծանուն հռովմէական պերճախօսին բազում անգամ օրինակութեամբ, գոնեա ստէպ ընթերցմամբ 'ի նոյնս կրթել զինքեանս ճգնիցին։

Քանի՜ ըղձալի էր ինձ և ամենեցուն սիրողաց հայկաբան ճոխ բարբառոյս՝ զայս գործ մեծի պատմագրիս 'ի սրբազան հրաշալի գրչաց մերոց Նախնեացն Թարգմանչաց յեղեալ տեսանել 'ի մերս, 'ի գանձ ցանկալի և յաւերժական. այլ զի անտի զրկեցաք գոնեա 'ի ճարտարագունէ քան զիմս չափաւորութիւն. բայց զի և յայսմ, յոր իմում է կար՝ ոչ յուլացեալ հեղգացայ, ներողութեան հանդիպել աղաչեմ։

# ԶԹՈՒԿԻԴԻԴԵԱՅ ՈՐԴԻՈՅ ՈԼՈՐԵԱՅ

## ԶԿԵՆԱՅ ԵՒ ԶՊԱՏՄԱԳՐՈՒԹԵՆԷՆ ՅԱՌԱՋԱԳՈՅՆ ԱԶԴ



Զոր միանգամ հաւաստեաւ զկենաց Թուկիդիդեայ գիտեմք, 'ի պատմագրութենէ նորա ունիմք զայն. իսկ զոր արտաքոյ 'ի մատենագիրս նախնեաց և արդեաց զնմանէ ցիր սփռեալ գտանեմք, բազում այնք են՝ որ երկբայականք են, և որ յաճախ իրերաց քակտիչք: Ի վերկայութենէ անձին նորա գիտեմք, թէ Աթենացի էր նա և որդի Ոլորեայ. և 'ի սրածութեան քաղաքին՝ ըմբռնեալ և ինքն 'ի նոյն, տայ ճշգրիտ նկարագիր համակ կերպարանաց ախտիս. և թէ մեծահարուստ էր այրն 'ի մտից այտի իւրոց 'ի բովուց ոսկւոյ Թրակիոյ. և թէ զօրավարելով նորա 'ի Թրակիա և յաղաչանս անդ առ նա բնակչաց Ամփիպօլեայ ձեռն տալ նոցա ընդդէմ զինուց Բրասիդեայ՝ խեթացեալ Սպարտացւոյն 'ի մեծագանձ զօրութենէ նորին, փութայր խաղաղութեամբ յարմարել զիրսն ընդ Ամփիպօլսեցիս: Թուկիդիդէս չկարելով հասանել 'ի դէպ ժամուն 'ի թիկունս աղաչաւորացն, սակայն փութացեալ վանեաց զԲրասիդաս, և ապրեցոյց զՀիոն քաղաք: Եւ որպէս կարծի 'ի պատճառս կորստեան Ամփիպօլեայ տարագիր 'ի հայրենեաց լեալ զամս քսան, և ընդ բոլոր շրջան ամաց Պելոպոնեսական մարտին կեցեալ՝ 'ի խոր իսկ ծերութիւն ժամանէր:

Զքսանամեայ ժամանակ տարագրութեան իւրոյ արտաքոյ հայրենեաց 'ի հետազօտութիւն ամենայնի անցից պատերազմիս նուիրեալ Թուկիդիդէս, և յեղափոխութեանց ժողովրդոց և առանձին նոցուն դիպաց, մանաւանդ Պելոպոնեսացւոց՝ ձեռն 'ի գործ առնէր տալ զիւր պատմութիւն, իբրու անվրէպ ստուգութեամբքն և ճշգրիտ նկարուք 'ի նմա բնաւից իսկ մարդկեղէն կրից՝ 'ի մշտակայուն յիշա-

տակաւին ճշմարտութեան, և անաչառ ուսուցիչ առյապայ դարուց ազգին. և թէ գրեաց նա զպատմութիւն պատերազմացս մինչև 'ի քակտումն Աթենացւոց պետութեան, և յուսումն երկայն պարապոյ Պիրէոնի, յորում բովանդակին՝ ամք քսան և եօթն:

Ընդ սքանչելի հանճարոյ զուգորդեալ փայլէ 'ի Թուկիդիդէս ոգի ազատ 'ի հասարակաց կրից մարդկութեան, զի տարագիր 'ի հայրենեաց չտայ ընաւ ցոյց ոխակալ քինու կամ ատելութեան ընդդէմ հալածչաց անձին իւրոյ, ոչ յայտնապէս և ոչ պատրուակաւ քօղարկեալ: Ի դէպ՝ քաջատոհմութեամբն և մեծափարթամ ճոխութեամբ 'ի պատարուն գիտութիւն անցից հասեալ, բազում ինչ 'ի լուր ականջաց՝ քան որոց ինքնին ականատես, հաւաքեալ ժողովէր:

Թուկիդիդեայ ծնունդ կարծի 'ի չորեք հարիւրորդի եօթանասուներորդի առաջնոյ ամի (471) նախ քան զՔրիստոս. և Սուիդաս կեցեալ ասէ մատենագրին յութսներորդ յեօթներորդ Ոլիմպիադին (431 յամին Ն. Ք.): Իսկ զժամանակ մահու նորա որպէս ըղձննդեան ոչ գիտելով հաւաստեաւ, կարեմք կարծել կեցեալ նորա մինչև ութսուն ամ: Ի Թրակիա՝ քան 'ի պատճառս բովուցն, վասն անկասկած աներկեւանութեան և յուսումն իւրոյ պատմագրութեան, զամս աքսորանացն անցուցեալ համարիմ: Իսկ որ զԹուկիդիդեայ ընդունելիք ինչ ասացան և հաւանականք այսոքիկ են.

Նախ զի քաջատոհմիկ էր այրն յազգականութենէ Միլտիադեայ՝ յաղթականին Մարաթոնեան մարտի, որոյ կինն էր Հեգեսիպիլ դուստր Ոլորեայ արքայի Թրակիոյ, զի և անուն հօր Թուկիդիդեայ Ոլորոս՝ յայտ առնէ 'ի սերնդոց Միլտիադեայ և յարքունի զարմէ լինել նմա: Ծնեալ 'ի Հալիմուս աւան յԱտտիկէ, 'ի հռետորութեան վարժապետ ունելով զԱնտիփոն, և յիմաստասիրութեան զԱնաքսագոր: Եւ աւանդեն զրոյցք՝ եթէ դեռ ևս տղայ մանուկ Թուկիդիդէս 'ի լուր արտասանութեան պատմագրութեան Հերոդոտեայ յՈլիմպիական մրցանսն՝ կայր և լայր, գուշակ ապառնւոյ իւրոյ հանճարոյն:

Թուկիդիդեայ կին էր մեծահարուստ ոք օրիորդ 'ի բովուց ոսկւոյ 'ի Թրակիա. որ և յետ ամաց աքսորանացն դարձ 'ի Թրակիա արարեալ Թուկիդիդէս 'ի քաղաք կնոջ իւրոյ 'ի Սքապթէ Հիլէ, զճանապարհայն 'ի գալ յԱթէնս, կամ ըստ այլոց 'ի նմին իսկ 'ի քաղաքին՝ դաւաճանեալ սպանաւ:

Բաժանումն պատմագրութեան Թուկիդիդեայ յութ գիրս, յորոց յետ մահու նորա զայն հրատարակեցին՝ թուի տրոհեալ. քանզի եղեն որ յինն գիրս և կամ յերեքտասան իսկ զայն կարգեցին: Բայց յեղանակս տարւոյ՝ յամառն և 'ի ձմեռն զայն որոշել, նորին մատենագրի է գիւտ՝ իբրու յուրուագիծ պատկեր տալով զայն 'ի տեսիլ:

Դժուարին է ճշգրտել զժամանակ հրատարակելոյ պատմագրութեանս Թուկիդիդեայ 'ի Յունաստան. և չէ անդէպ կարծել թէ յետ բազում ամաց զկնի մահու մատենագրիս 'ի յայտնութիւն եկն երկասիրութիւն նորա: Դիոգինէս Լայերտացի ծածկեալ առէ պատմագրութեանս Թուկիդիդեայ անծանօթ՝ մինչև Քսենոփոնտեայ լրացուցիչ մասին յառաջագոյն գալ 'ի լոյս:

Խնդիր է անլուծանելի թէ զիա՞րդ միաբանիցին բանք պատմագրիս. «Գրեցի զդէպս պատերազմին մինչև 'ի քակտել պետութեան Աթենացւոց, և յառնուլ երկայն պարսպացն Պիրէանի 'ի Լակեդեմոնացւոց, որ են ամք քսան և եօթն Պելոպոնեսական պատերազմին». ուր տեսանեմք անկարծ ուրեմն կասել պատմութեան յընթացից: Ի լուծումն խնդրոյս, ոմանք լոկ խոստումն միայն համարեցան զմատենագրին բանս. և մահու կամ յայլոց պատճառաց արգելեալ նորա յամբոխ գործոյն ժամանելոյ: Թէպէտ շատ իսկ երկարակեաց եղև նա 'ի լրումն ձեռնարկութեանն. և թէ չէր 'ի ճահ այնպիսւոյ խոհական առն խոստումն անկատար 'ի գիր տալ, և չչափել յառաջագոյն զկարևոր ժամանակն առ այն: Վասն որոյ եղեն որ յարկածից զխպաց կորուսեալ զվերջին մասնն պատմագրութեանս համարեցան, կամ յանհոգութենէ գրչի հատեալ 'ի բնագրէն, և կամ յակամայս ոչ 'ի լրումն գրչութեանս ժամանեալ, զի և յաւելուածս, «Յետ ամարայնոյս 'ի գլխաւորել ձմերանս վախճան լիցի քսաներորդի և առաջնորդի ամի պատերազմիս», գրչին են բանք: Ո՞ գիտէ սոյն սա գրիչ և զճասս ութերորդ գրոց հատեալ և համառօտեալ: Եղեն դարձեալ որ անդէպ ամենևին և անարժան զՔսենոփոնտեայ կարծիս կարծեցին, իբրու թէ սնափառ մտօք ախտացեալ այրն մեծախոհ, և կրճատելով զգործ Թուկիդիդեայ 'ի մասնն այն լրացուցիչ զիւր անուն դրոշմէր: Ինձ անհաւան թուի ամենևին, յարկածից կամ առ գրչին թերանալոյ կարծել զվերջին գիրսն կորուսեալ. ուր ընդ երկար, առէ Լայերտացին, զօրինակ ոչ ուրուք առեալ բնագրին, ոչ 'ի կենդանութեան և ոչ յետ մահուն՝ առ անկասկած աներկևանութեան առն և բարեկամաց պատմագրիս՝ խնամով զգուշացեալ:

Սակայն և առանց իսկ յայտնի կարծիս ընդերելոյ, յոյժ 'ի դէպ է ասել, թէ 'ի Կնոսիմայ մարտէն մինչև 'ի քակտումն երեսնից բռնաւորաց այնպէս մեծ էր և կարևոր ժամանակն պատմագրական, մինչև 'ի բնէ շարժել զերևելի երևելի հանճար ժամանակիս 'ի մատենագրութիւն: Վասն որոյ և ոչ աննման ամենևին՝ և Քսենոփոնտեայ առանց այլ ինչ ընդ միտ ածելոյ զաւլիւր պատմագրութիւն. թէպէտ և այլում զնոյն կանուխ յառաջագոյն աւանդեալ: Նա զի յութերորդ գիրս իւր Թուկիդիդէս վասն բազմապատիկ խուռն դիպացն որ կան զմխեանց կնի անհեռ 'ի վերայ գային, յարչաւակի իմն սուբալ թուի, զճիգն մանաւանդ հանճարոյ 'ի դերել զուշ ընթերցողին 'ի դէմ եդեալ նպատակն՝ քան զերագոյն անփութութիւն թուիմ տեսանել:

Ընդ ստուգութիւն պատմելոյն Թուկիդիդեայ չեղև երբեք կարծիք երկբայութեան. զի ոչ 'ի շողոմել զկիրս մարդկան ժամանակին, այլ 'ի հրահանգ յետնոց գրէր զոր գրէրն: "Ոչ 'ի վաղանցուկ հաճոյս լսելեաց, ասէ ինքնին մատենագիրս, այլ 'ի կայուն և 'ի մնացական ստացուած ապառնեաց մերոց աւանդեցի զպատմութիւնս": Դիմոսթէն՝ վեհագոյն 'ի պատմագիրս կոչէր զնա, և բազում ինչ ուսանէր 'ի նմանէ 'ի բերան: Կիկերոն "Խոհական և անաչառ յայտաբար իրաց և անցից անցելոց՝ անկեղծ պատմագրող" զնա ասէր: Լոնգինոս օրինակ առնոյր զնա վսեմին. Կուինտիլիանոս ընդ Հերոդոտեայ 'ի գերագոյն մատենագիրս նախնեաց զնա ասէ: Լուկրետիոս, Պոլիբիոս, Սալուստիոս, Տակիտոս 'ի նկարագիրս իւրեանց և յատենաբանութիւնս նմին ջանան լինել նմանող:

Յիրաւի արդեօք 'ի խրթնութիւն բանից պարսաւեցաւ Թուկիդիդէս, այլ չէ պարտ կարի իմն հանրացուցանել զայն. զի եթէ 'ի ճառսն ուրեք ուրեք սեղմ և հոծ իմաստք, և նսեմն ընդ վսեմին խառնեալ զուշ ընթերցողին ճգնիցեն յիմացուածս բանին. այլ արժան է խոստովանել, զի ոչ ատէպ է այն, և ոչ 'ի պատմականսն, ուր անզուգական է պայծառ յստակութեամբ: Եթէ խիստ երբեմն և անհարթ ոճ բանից նորա թուիցի, քանզի ազդողագոյն համարի խրատիւն ընդհարկանել զլսելիս և ընդոստուցանել զմիտս, քան ներդաշնակ քաղցրութեամբ ողոքել զսիրտս. զի ցանկայ մանաւանդ զարմանալի լինել քան սիրելի: Եւ յոյժ 'ի ճահ է ասել, զի ոչ հասարակաց մարդկան գրէր նա զպատմութիւնն, այլ վասն հրահանգեալ օրերոյ, որոց առաջի դնէր զահաւոր ճշմարտութիւնս, զոր-

խուր նկարագիրս մարդկեղէն կրից, և զտխրագոյն արուեստ քաղաքավարութեան աւագաց. ծածկելով զայս ամենայն 'ի գիտութենէ ամբոխին, մանաւանդ յիւրայոցն՝ որոց ատելի էին միշտ արք մեծարոյք և անուանիք:

Ի վերջին դարս ստգտանեն մեծապէս զԹուկիդիդէս, զի կարի յաճախէ նա զճառս ատենաբանութեանց. այլ քանի՛ խտիր ընդ այնր ժամանակի վարչութիւն Եւրոպայ և ընդ վարչութիւն աշխարհին Յունաց երբեմն. յորում ժողովք և ատենաբանութիւնք կարևոր հիմունք էին օրինաց տեսչութեան ժողովրդոց. զոր օրինակ և այժմ, թէպէտ ոչ իսպառ նոյնպիսիք՝ գումարմունք նուիրակաց և նոցին բանք, որպէս երբեմն յԱթէնս, ոչ ամենևին անտեղի թուին յեռուլ յայնցանէ զկարևորս 'ի կարգ պատմութեան. որպէս զՊոնաբարդեայ քաջալեր յորդորն առ զօրականն 'ի դաշտ մարտի: Քանզի և զբանիցս զայսցանէ զհռետորաց և զզօրավարաց նախնեաց՝ մեծամեծ և երևելի դէպք աշխարհին կախեալ կային. պատերազմ կամ խաղաղութիւն, բնաջինջ սատակումն կորստեան քաղաքի միոյ, կամ ներումն թողութեան և վերստին հաստատութիւն 'ի բնակութեան և յօրէնս սովորութեան. որով տեսանեմք զմեծ կարևորութիւն ճառիցն, և թէ քանիօն ծանունց վճռոց բովանդակիչք էին այնոքիկ: Սոքին դարձեալ յայտարարք և քաղաքավարութեան աւագ մարդկան ժամանակին, 'ի նոցին իսկ բանից տալով զնկարագիր բուսոյ բարուց որերոյն, մինչև ներքին անգամ խորհրդոց նոցին և գաղտնեաց մտաց: Թէպէտ և ըստ խոստովանութեան իսկ հեղինակիս դըժուարին էր նմա անձամբ լինել նոցուն ականջալուր, կամ յայլոց իսկ առեալ ճշգրիտ ամենևին յեռուլ բանս, բայց եթէ ոչ իսպառ օտարացեալ 'ի կարևոր իմաստիցն, ըստ կարի հաւատարմութեամբ յերիւրեալ զխօսս. ուր ըստ Կիկերոնի հաւանելոյն՝ առաւել ընթեռնըլիք են ճառքս, քան 'ի լուր ականջաց իմանալիք:

Թուկիդիդէս եղև առաջին՝ որ մերժեալ իսպառ զքերթողական վէպս առասպելեաց 'ի կարգէ պատմութեան, միտ եդ ճշմարտութեան եղելոցն, և եկաց հաւատարիմ նկարագիր ընթացից բերման մարդկութեան: Եւ որ քան զամենայն սքանչելին է 'ի նմա, քաջ կցորդեաց զհակառակսն, ընդ անաչառ պատմագրի պահելով և զթուիչ քերթողական: Զի քերթուած իմն համարեցան և նախնիք զպատմագրութիւն Թուկիդիդեայ. և Շլէկէլ նմանեցուցանէ զայն մեծի վիպասանական եղերերգութեան: Եւ Պլուտարք, "Ի ճշգրիտ

պատկեր նկարուցն և 'ի խանդս աղօտս ընդօստուցեալ Թուկիւդիդէս զունկնդիրսն, ասէ, 'ի մօտուստ հանդիսատես պատմելեացն առեալ ածէ զնոսա, և զկիրս արհաւրաց երկիւղին երբեմն և յուզից խռովութեան յասպարիսի անդ ականատեսիցն 'ի բացակայ այսր յընթերցողն փոխանցէ„ : Այսպէս 'ի նկարագիրս պատերազմաց և յ[illegible]անին ժխորս քաղաքայնոց. այսպէս յահագին պատկերի սրածութեան քաղաքին Աթենացւոց. այսպէս 'ի ճառս բազմապատիկս, և 'ի նրբին տրամախօսութիւն Մելիացւոց և Աթենացւոց. այսպէս 'ի տալ մեզ ծանօթս զաւագ որերոյն թէ որպիսիք ոմանք կային Թեմիստոկլէս, Պերիկլէս, Բրասիդաս, Նիկիաս, Ալկիբիադէս, Անտիփոն, հակառակօքն դերադանցեալ զմիմեամբք: Նկարագիր միայն արշաւանին Սիկիլիոյ, որպիսի մեծափառ չուն, և քանի աղետաւոր վախճանն. այնպիսի ճարտար հանճարոյ են արգասիք՝ զի իրաւամբ Դիմոսթենէս ութիցս զպատմագրութիւնս Թուկիւդիդեայ գաղափարէր, և Կիկերոն զմրցանակ արուեստին պերճախօսութեան քան այլում ումեք 'ի մատենագրաց՝ Թուկիւդիդեայ ընծայէր:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

## Ա ԳՐՈՑ

---

Ա. Պատճառք՝ որով եկն Թուկիդիդէս 'ի պատմագրութիւն Պեղոպոննեսական պատերազմին: Բ-ԺԱ. Նախկին պայմանք աշխարհին ամենևին խուժ, մինչև ցթագաւորութիւն Մինովայ արքային Կրետացւոց և մինչև ցարշաւանն Տրոյիոյ: ԺԲ-ԻԲ. Յետ Տրոյական պատերազմին մինչև ցմերժումն Պիսիստրատեանց և հալածել Մարին: ԻԳ. Ստոյգ պատճառք Պեղոպոննեսական պատերազմին: ԻԴ-ԾԵ. Իրք Եպիդամնեայ, յորմէ և գժտութիւն 'ի մէջ Կորկիւրացւոց և Կորնթացւոց, այլ և այլ պատգամաւորութիւնք 'ի հակառակ իրերաց դաշնակցութիւն, և փոփոխ բաղդիւ ծովամարտք: ԾԶ-ՁԸ. Պատճառք Պոտիդեայ պատերազմին. պաշարումն քաղաքին ընդ ծով և ընդ ցամաք, որով և գրգռութիւն Կորնթացւոց և Աթենացւոց. վայրապար հրեշտակութիւնք 'ի Լակեդեմոն, և լուծանել դաշանց խաղաղութեան 'ի մէջ Պեղոպոննեսացւոց և Աթենացւոց: ՁԹ-ՂԹ. Սկիզբն զօրութեան Աթենացւոց 'ի Պարսկական արշաւանէն մինչև 'ի Պեղոպոննեսական պատերազմն: Ճ. Պատերազմ Աթենացւոց առ Եւրիմեդոն գետով: ՃԱ-ՃԳ. Սասանութիւն Սպարտայ. ապստամբութիւն Իլովտաց և նուաճումն: ՃԴ. Աթենացիք 'ի թիկունս Եգիպտացւոց՝ որ նշկահեն զիշխանութիւն արքային Պարսից: ՃԵ-ՃԷ. Այլ և այլ կռիւք 'ի մէջ Աթենացւոց և Պեղոպոննեսացւոց և կառուցումն երկայն պարսպաց Աթենացւոց: ՃԸ. Տիրապետութիւն Աթենացւոց 'ի Բիովտիա: ՃԹ-ՃԺ. Վախճան եգիպտական պատերազմին և ծախողել արշաւանին Աթենացւոց: ՃԺԱ-ՃԺԵ. Պերիկլէս 'ի վերայ Սիկիոնացւոց. Կիմոն 'ի Կիպրոս. կրկին դառնալ Բիովտացւոց 'ի նախկին յիւրեանց յազատութիւն. երեսնամեայ խաղաղութիւն 'ի մէջ Աթենացւոց և Պեղոպոննեսացւոց: ՃԺԶ-ՃԺԹ. Պերիկլէս խորտակէ զՍամոսացիս, քանդէ զպարիսպս նոցա. նուաճի և Բիւզանդիոն: ՃԻ-ՃԻԸ. ՃԼԸ. Պաւսանիաս և Թեմիստոկլէս: Վերստին դարձ մատենագրիս 'ի կարգ պատմութեանն՝ յորմէ զարտուղեցաւ: ՃԼԹ-ՃԽԶ. Վայրապար հրեշտակութիւնք 'ի մէջ Աթենացւոց և Լակեդեմոնացւոց, և 'ի վերջէ խորհրդով Պերիկլեայ մերժեն Աթենացիք զխաղաղասէր զիրաւախոհութիւն Լակեդեմոնացւոց, և սկիզբն պատրաստութեան 'ի պատերազմ:

# ԳԻՐՔ Ա.

Թուկիդիդէս Աթենացի գրեաց զմարտս պատերազմաց Պելոպոնեսացւոցն և Աթենացւոց, թէ որպէս գուպարեցան այնոքիկ ընդ միմեանս. անդստին 'ի սկզբանէ յեռեալ մանր զամենայն, յուսով զի մեծ ինչ և արժանապատում քան զյառաջագոյն զնախնեաց անցսն աւանդէր: Նկատելով զայս կանուխ քաջ յահագին պատրաստութենէ ախոյենից երկուստեք, և զի Հելլենաց ազգ՝ կէսք անդէն վաղագոյն, այլք խորհրդով և պարապով՝ յայս կամ յայն կողմն հաւանեալ միտէին: Մեծ եղև շարժումս այս առ Հելլենս, 'ի մասնէ և առ խուժս, և զի այսպէս ասացից, առ բազմագոյնս 'ի մարդկանէ: Զի որ յառաջ քան զայն վաղնջուց ժամանակաց դէպք եղեն, առ յոլովութեան ամաց ճըշդիւ գտակաւ հասանել 'ի վերայ իրացդ անհնարին էր, բայց եթէ 'ի նշանակաց անտի նոցին, որոց երկարագոյնս միտ եդեալ քննեցի՝ հաւանիմ ասել, թէ չեղեն այնոքիկ մեծամեծք, ոչ ըստ կարգի պատերազմաց, և ոչ առ այլովք ամենեքումբք:

Բ. Եւ յայտ իսկ է, զի որ Ելլադայն կոչի արդ, չէր երբեմն 'ի վաղ ժամանակս հաստատութեամբ բնակեալ, այլ գաղթք լինէին հանապազորդք, և ամենայն ոք վաղվաղուկ էր թողուլ զիւր բնիկ երկիր յերեսաց հզօրագունի ամբոխի մարդկան: Եւ զի տուրևառ փոփոխմունք չէին 'ի մի-

ջի և ոչ աներկիւղ խառնուրդ առ միմեանս՝ ոչ ընդ ծով և ոչ ընդ ցամաք, այնչափ ինչ ոք վարէր զերկիր, որպէս ինչ զօդեպահիկն պաճարել նովաւ, ոչինչ աւելորդ ունելով արդիւնս, և ոչ տնկագործելով՝ 'ի կարծիս երկիւղի միշտ, եթէ գուցէ 'ի վերայ անամուր վայրացն հասեալ օտարք կերիցեն զայնս. և զի զառօրեայն ամենայն ուրեք հայթհայթել հաւատային՝ վասն որոյ և առանց դժկամակելոյ պանդխտէին այլուր. որով ոչ մեծութեամբ քաղաքաց և ոչ այլով իւիք կազմածովք հզօրք գտանէին: Եւ ընտիրքն մանաւանդ արգաւանդք 'ի գաւառաց՝ յաճախագոյն 'ի բնակչաց խախտէին, զոր օրինակ որ Թեսալիա կոչի արդ և Բիովտիա և երեցագոյն մասնն բաժնի Պելոպոնեսայ՝ բաց յԱրկադեայ, և որ այլ ևս բարեբեր կողմանք էն: Քանզի զօրութեամբ երկրին փարթամացեալ ոմանց 'ի քաղաքացեաց 'ի յեղափոխութիւնս թեւակոխէին, որով և վտանգեալ անջան աւար այլացեղից լինէին: Այլ գաւառս ատտիկեան վասն արուդ անպտղութեան 'ի բազմաց հետէ հանդարտեալ նստէր, զնոյն պահելով զբնակիչս անփոփոխ. և 'ի կարևոր հաւաստիս բանիցս սատուգութեան, զի նորանոր գաղթականութեամբ աննմանի այլոց ամենեցուն աճեցեալ նա յառաջադէմ զարգանայր: Քանզի 'ի պատճառս պատերազմաց և առտնին չփոթից՝ 'ի քաղաքաց քաղաքաց Ելլադայ ձոխք գնացականք՝ դիմեալք գային յԱթէնս իբրու յապաւէն աներկեան, և յաւելեալ 'ի քաղաքացիս՝ 'ի վաղուց անտի բազմամարդ զքաղաքն գործէին, մինչ զի յետ այնորիկ ոչ տանելով Ատտիկեայ զամբոխութիւն մարդկան, հատուածս 'ի սոցանէ 'ի Յոնիա արձակէր:

գ. Ոչինչ պակաս յայտարար կարծեմ տկարութեան նախնեաց և զայս, զի յառաջ քան զՏրոյական պատերազմն չերևին ուրեք 'ի Հելլենս աշխարհովին շահատակութիւնք, և թուի իսկ թէ չէր անուանս այս Հելլէն հասարակաց անխտիր յորջորջումն. և ոչ նախ քան զՀելլենոս Դևկալիո-

նեան լուեալ երբէք կոչումնս այս, այլ դրոշի դրոշի մանաւանդ Պելասգեանց անուանք էին առանձին սեփական։ Բայց յորմէ հետէ Հելլենոս և որդիք նորա զօրացան 'ի Փթիա, առեալ ածէին զսոսա 'ի վերայ այլոց քաղաքաց իբրև ձեռն օժընդակ, և այնուհետև ախորժէր ամենայն ոք 'ի հասարակաց խօսս, 'ի նոյն անուն զանձն կոչել. սակայն և այնպէս բազում ժամանակաց պէտք եղեն մինչև յընդհանուրս տիրացեալ կալաւ անունս։ Վկայ այսմ մեզ Հոմերոս, որ Թէպէտ բազում ամօք յետոյ էր նա քան զՏրոյիոյ պատերազմն, ոչ ուրեք ամենեցուն հասարակաց տայ նա զանունս, բայց որոց ընդ Աքիլլեայ էին 'ի Փթիոյ, որք և նախկին կացին Հելլէնք։ Այլ Դանայեցիս կոչէ նա 'ի քերթուածսն, Արգիացիս և Աքայեցիս, և ոչ ուրեք բարբարոսս, զի չև ևս, որպէս համարեալս եմ, լսէր Հելլէնդանուն հակառակ բարբարոս կոչոյն։ Եւ Հելլէնքս այսոքիկ՝ որք ըստ քաղաքաց քաղաքաց 'ի սոյն անուն, և կամ ժամանակաւ յընդհանուրս առին 'ի կոչել, ոչ մի ինչ գործ արժանաւոր նախ քան զՏրոյական պատերազմն՝ առ տկարութեան և առ միմեանս անկցորդութեան կենաց, աշխարհախումբ գործեցին։ Եւ 'ի սոյն յայս արշաւան՝ վարժեալք միանգամ 'ի ծովաչու նաւագնացութիւնս, դաշնաւորեալ միաբանեցան։

Դ. Քանզի Մինովս վաղագոյն յոյժ ժամանակօք, որպէս զրոյցք ասեն, կազմեալ նաւատորմ և զայժմեան զհելլենական ծով բովանդակ գոգցես կալեալ ընդ ձեռամբ, տիրեաց և Կիւկլոդայց, և առաջին եղև որ բնակեցոյց զյոլովագոյնս 'ի կղզեաց, 'ի բաց վտարեալ յայնցանէ զԿարիացիս, և զիւր որդիս իշխանս կարգեաց 'ի նոսա։ Եւ 'ի հինից, որպէս 'ի դէպ է կարծել, շատ իսկ մաքրեաց զծով, առ յաճախելոյ նովաւ զիւր մուտս հասից։

Ե. Նախկին Հելլէնք և որք 'ի բարբարոսաց մեծացամաք երկրի ծովեզերեայք էին և որ կղզայինք, 'ի սկսանելն յաճախել առ միմեանս նաւագնացութեամբ՝ հինաբար առ-

պատակէին առաջնորդ լուրեանց ունելով զկաշմբուռն մարդիկ, 'ի շահ անցնիւր օգտի և 'ի ռոճիկ տկարաց: Անկեալ սոցա 'ի վերայ անպարիսպ քաղաքաց, որպէս յաւանս ցըրիւ բնակելոց, յաւարի առնուին զայնոսիկ, և շատ այնք էին, որք անտի զկեանս պաճարէին. և այս ոչ միայն չէր ամօթոյ գործ, այլ և 'ի փառաց և 'ի պարծանաց սակի: Զայն հաւաստեն և արդ ոմանք 'ի բնակաց ցամաք երկրի, որք ճարտարաբար աւազակել 'ի պարծանս ունին. զոր օրինակ և առ նախնիս երբեմն 'ի քերթողս զնոյն հարցումն միշտ առ ծովագնաց հիւրան հարցանէին, եթէ 'ի հինից արդեօք համարի իցեն. իբրու ոչ ինչ գործ անարժանութեան՝ որոց հարցեալ լինէին, և ոչ 'ի պարսաւանաց կարգի իրք՝ որոց գիտելն կամէին: Եւ 'ի ցամաք երկրի աւազակէին այր զընկեր. և ցայսօր իսկ յոլովք 'ի Հելլենաց ըստ վաղեմի սովորութեան գնան, որպէս որ 'ի Լոկրիս են Ոզոլք և Ետոլացիք և Ակառնանացիք, և որք 'ի կողմանս կողմանս աշխարհին բնակք: Ի նախնական յելուզակութենէ աստի պահեցան առ ժողովուրդ երկրին օրէնք հանապազորդ զէն զանձամբ առնուլ միշտ:

Զ. Զի և բովանդակ Ելլադա զինազգեստ երբեմն՝ վասն անպարիսպ բնակութեան և ոչ անկասկած կցորդութեան առ միմեանս, ըստ խժական օրինի սովոր էին և 'ի ժամ տուընջեան չերթալ երբեք յանզինուց. զի և հետք նախնոյ տարազուն պահեալ ցայժմ ուրեք ուրեք յԵլլադա՝ նշանակք են հասարակաց լինելոյ այն երբեմն յօրէնս կենաց: Յորս առաջինք եղեն Աթենացիք՝ որ 'ի բաց զզէնս մերկացան, և 'ի վայրասուն կենաց 'ի հեշտագոյն փոխեցան վարս: Եւ 'ի ծերունեաց նոցա բարեկեցիկքն՝ ոչ բազում ինչ ժամանակք են, յորմէ հետէ առ կանացի մեղկաւէտ թուլութեան թողին զպատմուճանս կտաւիս, և յուկեհուռն ճպռունս [1] ամփոփէին զցցունս վարսից 'ի վերայ

[1] Ոմանք 'ի հելլենագիտաց համարեցան κρωβύλων ազգ ինչ յօրինուածոյ հիւսից վարսից արանց 'ի վերայ ճակատուն 'ի ձև ճպռանց, որպէս զկանանց χαρύμβας, և զմանկտւոյն σκαρνίον:

ճակատուն. ուստի և առ Յոնիացիս ծերունիքն վասն համարիւն տոհմակցութեան պահեցին ընդ երկար զայդ ձև պաճուճանաց: Իսկ վասն ցածուն հանդերձից և արդի տարազուն, Լակեդեմոնացիքն եղեն որ նախ վարեցան նովաւ, և ճոխքն 'ի նոցանէ և աւագք յամենայնի հաւասարեցան ընդ ամբոխին: Նոքին դարձեալ նախ երևեցան մերկանդամ 'ի կրկէսին 'ի տեսիլ հասարակաց 'ի մերկանկու-մրցութիւնս իւղաթուրմք. ուր 'ի հնումն և յՈլիմպիական խաղս գօտևորեալ առ երանամբ ըմբշամարտք 'ի կռիւ գային. և ոչ բազում ժամանակք են յորմէ հետէ դադարեցան օրէնքս: Են են արդարև ցայսօր առ խուժս, մանաւանդ առ ասիացիս՝ բռնամարտ և գօտեկռիւ մրցանակաւ, որք զմիջովք ափածեալք գան յասպարէս ագոնին, իցեն և այլ ոչ փոքր հաւաստիք, զի ոչ աննմանի էր նախնեացն Հելլենաց կենցաղ ըստ այժմուս բարբարոս ազանց:

Է. Իսկ որ 'ի վերջին ժամանակս բնակեցան քաղաքանի, յորմէ հետէ համարձակ եղև նաւարկութիւն ծովուն և մեծութեամբ ճոխացան, և պարսպապատ ամրանայինն 'ի վերայ ծովափանց, ընտրէին մանաւանդ զկիրճս ծովուց 'ի դիւրութիւն վաճառականութեան, և 'ի տիրապետութիւն 'ի վերայ մօտաւոր ժողովրդոց: Իսկ երիցագոյնքն ժամանակաւ ցորչափ տևէր երկարէր առ նոսա հինաբար յելուզակութիւն 'ի ծովուն, 'ի կղզիս և 'ի ցամաք երկրի՝ հեռի յափանց ծովուն բնակէին. զի 'ի նոյն հաւասար յաւարառութիւն պարապէին, և առանց հմտութեան 'ի նաւաստականութիւն՝ ծովեզերեայք էին. և այդ ահա պատճառք զի 'ի միջերկրայս կառուցան քաղաքք:

Ը. Ոչինչ նուազ հէնք էին և կղզայինք՝ Կարիացիք և Փիւնիկեցիք, որ 'ի կղզիս կղզիս կալան զբնակութիւն: Ի հաստատութիւն ստուգութեան բանիցս, երբև 'ի վերջնում յայս մարտի առեալ սրբէին Աթենացիք զԴելոս, 'ի բրելն զոսկերս մեռելոց 'ի կղզւոջն, կիսով և աւելի 'ի վեր երևեցան գերեզմանք Կարիացւոց, յաղագս անտի զինուց

նոցա թաղելոց ընդ դիակունս՝ ծանուցեալ որովք թաղէն նոքա ցայսօր զմեռեալս իւրեանց:

Յետ զօրանալոյ Մինովսյ 'ի ծովու, դիւրանայր այնուհետև նաւազնաց կցորդութիւն առ միմեանս անխափան. զի մերժեցան 'ի ձեռն նորա չարագործք 'ի կղզեաց, յորոց և զբազումս լցոյց նա մարդկութեամբ: Մինչդեռ և ծովեզերեայք մեծացեալ արարովք աներկևաննատէին, և առաւելեալքն գանձուք արծաթոյ 'ի նոսա՝ պարսպաւ զքաղաքս իւրեանց ամրացուցանէին, և տկարքն յայնժամ անաւագք 'ի շահուց օգտի յորդորեալք մտադիւր ընդ լծով ծառայութեան հզօրագունին խոնարհէին. որով և փարթամք 'ի հլութիւն հպատակութեան զքաղաքկնեարն ածին: Ըստ օրինակիս բարդաւաճեալ ապա ժամանակաւ, զինուորեցան 'ի Տրոյական արշաւանին:

Թ. Իսկ Ագամեմնոն, որպէս և հաւանեալս եմ, ոչ եթէ բռնադատեալ 'ի տարփածուաց Հեղինեայ՝ երդմամբ Տինդարեայ, այլ զի հզօր էր 'ի ժամանակին, եկաց 'ի գլուխ զինուորութեան արշաւանին: Որոյ ճշգրտագոյնս հասեալ է 'ի վերայ յիշատակաց Պելոպոնեսացւոց՝ զորս 'ի նախնեաց անտի զրուցաց առեալ աւանդեն, եթէ Պելոպս բազմութեամբ գանձուց՝ զոր եբեր յԱսիոյ, զօրացեալ նախ 'ի վերայ մարդոց կարօտելոց, թէպէտ օտար ինքն և եկ՝ եդ զիւր անուն 'ի վերայ գաւառին. և ևս մեծացեալ ապա որդիք նորա և սերունդ, յորոց իբրև սպանեալ լինէր Եւրիսթեւս 'ի Հերակլեանց անտի յԱտտիկէ. այն որ յերթալ իւրում յարշաւանն ըստ օրինի ազգակից ժառանգութեան թողոյր զՄիկէնս և զիշխանութիւն արքայութեան իւրոյ մօրեղբօր իւրում Ատրէոսի. որ 'ի պատճառս մահուն Քրիսիպպեայ հալածական երթայր յերեսաց հօրն. որով և 'ի չդառնալ Եւրիսթեայ 'ի պատերազմէն յետս, հաւասար հաւանութեամբ Միկենացւոց առ ահի Հերակլեանց, և զի զօրաւոր դիտէին զԱտրեւս և սպառարկու ամբոխին, առեալ մատուցին նմա զթագաւորութիւն

Միկենայ և որոց Եւրիսթեւսն իշխէր, որով զօրացան Պելոպեանք քան զՊերսեանս։ Եւ որպէս ինձ թուի, Ագամեմնոն ժառանգ այսոցիկ ամենեցուն, և նաւական զօրութեամբ գերազանցեալ զամենեքումբք, և ոչ շնորհուկս առնելով նմա, կամ առ երկիւղի դաշնաւորաց 'ի գլուխ կայր նա բանակին։ Եւ եկեալ նորա հզօր հանդիսիւ նաւաց, յետ առաքելոյ յայնցանէ՝ որպէս երևի, 'ի թիկունս օգնականութեան Արկադացւոց, զոր օրինակ յայտ արարեալ նշանակէ Հոմերոս, եթէ վկայութեամբ նորա շատանալ կարիցեմք. 'ի թողուլ նորա յաջորդին զգաւազան արքայութեան իւրոյ, ասէ.

« Կըղզեաց կըղզեաց և Արգոսի համանգամայն իշխեցող ».

որոց ոչ կարէր անշուշտ իշխել եթէ չէր նորա նաւախումբ հզօր, իշխող և ինքնին բնակիչ ցամաքի. բայց եթէ սակաւուց միայն շրջաբնակ կղզեաց հրամայել էր նմա։ Յարշաւանէս աստի իմաստասիրել է թէ որպիսի՛ ինչ էր յառաջ քան զայդ զինուորութիւն նախնեաց։

ժ. Եւ զի փոքր էր Միկէնք, և կամ թէ այնր ժամանակի քաղաքկնեար ոչինչ արժանաւոր առ մեզ երևեալ, ոչ վասն այնորիկ իբրու 'ի ստոյգ հաւաստեաց թերահաւատել իցէ, եթէ չէր արշաւանն այնպիսի՝ որպիսի ինչ ախորժեցին հռչակել քերթողք, և զրոյցք աւանդեցին։ Քանզի եթէ քաղաքն Լակեդեմոնացւոց հիմն 'ի վեր քանդէր, և քան զմեհենից և զշինից յատակս չթողոյր այլ 'ի տեսիլ յետնոց, դժուարին յոյժ լինէր արդեօք յետ ամաց բազմաց հաւատս ընծայել, եթէ ըստ համբաւոյն լեալ իցէ նորա զօրութիւն և իշխանութիւն. և սակայն տեարք են երկուց հնգեկաց Պելոպոնեսեայ գաւառին, և բոլորից 'ի գլուխ կան նաև արտաքոյ բազմաթիւ դաշնաւորաց։ Բայց զի չէ բնակակցութեամբ քաղաք համաժողով, և ոչ մեհենիւք և հոյակապ շինուածովք զարդարեալ, այլ ըստ վաղեմի սովորութեան Հելլենացւոց 'ի խումբս խումբս ցիր ափռեալ աւանաց, վասն որոյ և խոնարհ յոյժ քան զոր էն՝ երևեա-

ցի։ Որ եթէ նոյն անցք և ընդ Աթենացւոց քաղաքն անցանէին, երկպատիկ արդեօք առաւել կարծէր զօրութիւն նորա 'ի յայտարար տեսիլ անդ աւերակացն քան որ էն արդեամբք։ Չէ 'ի դէպ ապա ամենևին երկբայել, և ոչ յերևոյթս քաղաքաց քան զօրութեան նոցա միտ դնել. արժան է համարել զզինուորութիւն արշաւանիս մեծ քան զոր ցայնժամ եղեալ, և խոնարհ յոյժ քան զօրս այժմուս առ մեօք։ Թէ պարտ իցէ և յայսմ հաւատս ընծայել բանից Հոմերոսի, որում չէր ամենևին անճահ իբրև քերթող մեծագոյն տալ պատկեր սեթևեթիւքն, սակայն և այնպէս կարի իսկ սոոր և յետնեալ երևի։ Ի հազար երկերիւր նաւաց հանդիսի արշաւանին, միում միում 'ի Բիովտացւոց հարիւր և քսան զօրականս դնէ նա, և 'ի Փիլոկտետեանն՝ յիսուն. յայտ առնելով՝ որպէս կարծեմ՝ զխոշորն ընդ մեծ և ընդ փոքր. քանզի 'ի համար հաշուի նաւաց չառնէ նա յիշատակ զմեծութենէ այլոց նաւաց. ծանօթս միայն տայ թէ 'ի նաւս Փիլոկտետեայ թիավարքն միանգամայն և մարտիկք էին, զի առեալ նորա զամենայն թիավարս յաղեղնաւորս կարգէր։ Բայց 'ի թագաւորացն և յիշխանաց զօրուն, չէ 'ի դէպ բազումս կարծել զնաւորդաց թիւս. մանաւանդ յորժամ պատերազմական կազմածովք և աղխիւք ընդ ծով անցանէին, ոչ 'ի նաւս յարկածածուկս, այլ որպէս վաղեմի սովորութիւն էր ըստ տարազու հինից կառուցեալս։ Զի եթէ ընդ մեծ և ընդ փոքր՝ զմիջինն առնուցումք 'ի նաւաց 'ի քննութիւն, ոչ բազմաձեռն ինչ երևեսցի զինուորութիւնս, որպէս 'ի բովանդակ Եղլադա աշխարհաւ զինուորեալ յարշաւանդ։

ԺԱ. Եւ պատճառք իրացս ոչ այնչափ սակաւամարդութիւն, որչափ չքաւորութիւն արծաթոյ. զի առ 'ի չըգոյէ պարենից՝ այնչափ ինչ ածէին զօրս, որչափ մարթ էր նոցա ակն ունել 'ի մարտնչելն և հայթհայթել նոցա ռոճիկ։ Այն ինչ հասեալ նոցա և զօրացան յաղթութեամբ, ապա թէ ոչ չէր նոցա հնար պատնիշափակ ամրանալ. յա-

րում և ոչ զամենայն զօրութիւն իւրեանց գլխովին վարէին. այլ 'ի պէտս պարենից 'ի Քերսոնեսոն 'ի ցամաքակղզին 'ի մշակութիւն երկրի գնային և 'ի հինաբար ասպատակութիւնս: Որով 'ի ցրուել նոցա՝ կարացին տևել տոկալ Տրոյացիք զամս տասն ընդ հակառակամարտ զօրուն մնացելոյ: Զի եթէ լիութիւն համբարոյ էր նոցա 'ի գալ հասանելն, և առանց վարատելոյ 'ի մշակութիւն և յաւարառութիւնս՝ խմբովին գումարէին 'ի պատերազմ անդուլ, դիւրաւ ևս արդեօք վանեալ վկանդեալ էր նոցա զթշնամին. ուր ոչ համանգամայն, այլ մասամբ միայն զօրուն մնացելոյ այնպէս տևեցին բաւեցին. որ եթէ պնդեալ և հանապազորդեալ էր զպաշարումն քաղաքին, վաղու ևս արդեօք և անջան թերևս առեալ էր: Այլ առ 'ի չգոյէ արծաթոյ բնաւ իսկ յառաջագոյն կանուխ եղեալքն դուզնաքեայք են. մինչ սոյն այս մեծանուն քան զանցեալսն համայն, յոյժ 'ի վայր քան զհռչակ համբաւոյն, և 'ի բանից անտի քերթողաց միայն ինչ մի համարեալ է ցայսօր առ մեզ:

ԺԲ. Իսկ զկնի Տրոյական պատերազմին 'ի խռովս էին միշտ Հելլէնք և 'ի գաղութս անդադար. որպէս զի ոչ հանդարտեալ բարգաւաճէին: Զի 'ի յամել դարձի զօրուն յԻլիոնէ, բազմապատիկ յեղափոխութիւնք լինէին, և 'ի յոյզս անդ ամբոխից, ոյք միանգամ 'ի քաղաքաց քաղաքաց վտարանդիք գնային, նորանոր քաղաքանւոյ հիմնարկուք լինէին: Զի և արդի Բիովտացիք 'ի վաթսներորդի ամին յետ առման Իլիոնի, ելին յԱռնեայ յերեսաց Թեսաղացւոց և եկեալ բնակեցան յայժմեան Բիովտիա, որ Կադմեան անուանէր երկիր, յորում և յառաջագոյն հատուած 'ի նոցանէ բնակէր, յորոց և զինուորեցան յարշաւանս Իլիոնի: Իսկ Դորացիք յութսներորդի ամի ընդ Հերակլեանս կալան զՊելոպոնէս: Հազիւ ուրեմն ապա յետ բազում ամաց հաստատութեան հանդարտեալ Հելլէնք և յառնելն աղմկաց լռեալ՝ գաղթականս արտաքոյ առաքէին. զՅոնիա և զյոգունս 'ի կղզեաց Աթենացիք գաղթականու-

թեամբ բնակեցուցին. իսկ զկողմանս կողմանս Իտալիոյ և զՍիկիլիոյ, և որ այլ ևս գաւառք են Ելլադայ՝ Պելոպոնէսացիք: Եւ այս ամենայն խախուտք հատուածեալք յետ Տրոյական պատերազմին հանդիպէր:

ԺԳ. Եւ երբև ընչիւք և արարօվք զօրացեալ մեծացան քան որ երբէք յառաջագոյն, յարեան այնուհետև 'ի քաղաքս քաղաքս բռնակալք 'ի յաճախութենէ հարկաց ճոխացեալ. զի 'ի սկզբան յօրինաւոր սահմանեալ պատարագաց ժողովրդեան՝ ժառանգութեամբ որդի 'ի հօրէ ունէին զթագաւորութիւն:

Ի կառոյցս յայնժամ նաւաց թևակոխէր Ելլադա և 'ի ծովագնացութիւնս. Կորնթացւոց, ասեն, նախկին լեալ մերձաւոր այժմու տարազու կառուցանել նաւս, և յԵլլադա 'ի Կորնթոս զառաջինն կազմեցան եռաթի պատերազմիկ նաւք: Եւ Ամինոկլեայ նաւագործի Կորընթացւոյ կազմեալ ասեն նաւս չորս վասն Սամոսացւոց. և 'ի ժամանակէ անտի գալստեան Ամինոկլեայ 'ի Սամոս մինչև 'ի վախճան առաջիկայ պատերազմին գումարին ամք երեք հարիւր: Եւ երիցագոյն ժամանակաւ գիտեմք մըղեալ նաւամարտ Կորնթացւոց ընդ Կորկիւրացիս, յորմէ հետէ հաշուին ամք երկերիւր և վաթսուն: Բնակելով Կորնթացւոց 'ի կիրճս ծովուն՝ թանգարան էր վաճառուց քաղաք նոցա. զի որ 'ի Պելոպոնէս էին և որ արտաքոյ Հելլէնք ընդ ցամաք երկիր մանաւանդ քան ընդ ծով ճանապարհ առնելով ընդ երկիր սոցա, գային 'ի կցորդութիւն իրերաց: Փարթամք էին սոքա ընչիւք, որպէս և վաղեմի քերթողք յայտ առնեն, Մեծահարուստ քաղաք կոչելով: Յորմէ հետէ յաճախեցին Հելլէնք 'ի նաւագնացութիւնս, հզօր նաւատորմի իշխեցողք սրբեցին զծով յերեաց 'ի հէնից, և երկուստեք ընդ ծով և ընդ ցամաք, համբարանոց անքոյթ զքաղաքն նոցա կարգեալ, ճոխացուցին զնա յոյժ մեծութեամբ մտից գանձուց: Յետոյ ուրեմն ամբարձան և Յոնիացիք գումարտակաւ նաւաց առ Կիւրոսիւ, որ թագաւորեաց 'ի Պարսս նախ, և առ որ-

դուովն որա առ Կամբիւսեաւ. որոց պատերազմեալ ընդ Կիւրոսի կալան ժամանակ մի զծով՝ որ Թանայ զերկիր նոցա։ Առ Կամբիւսեաւ զօրացաւ և Պոլիկրատ բռնաւոր Սամեայ հանդիսիւ նաւաց 'ի ծովուն, և ոչ զսակաւս 'ի կղզեաց արկ ընդ իւրև, էառ և զՀռենիա և նուիրեաց զայն Դելեան Ապոլոնի։ Իսկ Փոկէացիք գաղթականութեամբ կառուցեալ զՄասսիլիա, 'ի ծովամարտս յաղթողք եղեն Կարքեդոնացւոց։

ԺԴ. Այս էին հզօրագոյն նաւական զօրութիւնք, որպէս երևի՝ յետ բազում ազգաց զկնի Տրոյական պատերազմին յարուցեալ յոտին. սակաւ յոյժ վարելով եռաթիս՝ պատերազմիկ նաւս, յիսնաթիովք և երկայնաձիգ նաւուք կազմէին զտորմիղն, որպէս և տեսանել է յարշաւանին։ Փոքր մի կանուխ քան զպատերազմն Մարաց և քան զմահ Դարեհի՝ որ յետ Կամբիւսեայ թագաւորեաց 'ի Պարս, էր նաւախումբ պատերազմիկ նաւաց բռնաւորաց Սիկիլիոյ և Կորկիւրացւոց. և յառաջ քան զարշաւանն Քսերքսեայ՝ այսոքիկ վերջինքս էին արժանաւոր յիշատակի նաւական զօրութիւնք Ելլադայ. և զի Եգինացիք և Աթենացիք և այլք սակաւս ունէին նաւս, յորոց յոլովք այնք էին՝ որ յիսնաթիք էին։ Անագան ուրեմն սպա 'ի Թեմիստոկլեայ յորդորեալ Աթենացիք 'ի պատերազմին ընդ Եգինացիս, և յերկիւղէ կարծեաց մօտալուտ արշաւանի բարբարոսին կառուցին իւրեանց նաւս, որովք և եղեն 'ի ծովամարտ, որք անլաստք դեռ ևս՝ ամենևին ոչ ունելով տախտակամած 'ի ծածկոյթ։

ԺԵ. Այսպիսի էր ահա որ 'ի վաղնջուց և որ 'ի վերջին ժամանակս զօրութիւն Հելլենաց 'ի ծովու. և որ սմին փոյթ կալան՝ մեծութեամբ մտից գանձուց և տիրապետութեամբ 'ի վերայ այլոց ստացան զօրութիւն մեծ, և հասեալ նաւուք կալան զկղզիս, մանաւանդ որոց չէր երկիր բաւական։ Իսկ պատերազմ երկրախումբ, որով և աշխարհակալութիւն, ոչ ուրեք երևեցաւ. զի որ եղև երբէք ընդ

գրացիս էր միայն և ընդ սահմանորդս։ Զելին բնաւ Հել֊
լէնք յերկրէ իւրեանց ածել պատերազմ յերկիր հեռա֊
ւոր յերկրակալութիւն. զի ոչ դաշնաւորութիւն միաբա֊
նութեան էր խոնարհագունից ընդ հզօրսն, և ոչ հաւասար
հաւանութեամբ զօրաժողով. այլ գրացի ընդ գրացւոյն
կռուէր, թո՛ղ զվաղընջական մարտս պատերազմաց 'ի մէջ
Քաղկիսացւոց և 'ի մէջ Երետրիացւոց, յորմէ համակ ազգն
հելլենական յերկուս նիզակակից հակառակամարտ դաշնա֊
ւորութիւնս որոշեցան։

ԺԶ. Դէպ լինէր յայլուստ և բազմաց այլոց խափա֊
նարար արգելից չզարգանալոյ նոցին, որպէս Յոնիացւոց՝
որ մինչդեռ յամենայնի յառաջադէմ թուէին լինել, Կիւ֊
րոս պարսկական զինուք վանեալ զԿրեսոս, և զամենայն
երկիր յայնկոյս Ալեայ յինքն վտարեալ և զծովեզերեայս՝
յարեաւ և 'ի վերայ սոցա, և զամենայն քաղաքանին որ 'ի
ցամաք երկրի հնազանդեցոյց. յետոյ ուրեմն և Դարեհ
նաւուք Փիւնիկեցւոց զօրացեալ կալաւ և զկղզիս։

ԺԷ. Իսկ որ 'ի յունական քաղաքս բռնաւորք էին
անցնիւր շահուն միայն իւրաքանչիւր միտ եդեալ՝ 'ի պահ
անձին և 'ի մեծութիւն տան իւրոյ, ըստ կարի աներկեա֊
նութեամբ ամփոփէին 'ի քաղաքս, և ոչ ոք 'ի սոցանէ
գործ մի արժանաւոր գործէր յիշատակի, բայց եթէ առ֊
րոյն առանձին ընդդէմ իւրոց շրջաբնակ ժողովրդոց. իսկ
որ 'ի Սիկիլիա եղեն բռնաւորք՝ քան զամենեսեան զնոսա
յաջողեալք զօրացան յոյժ։ Այսպէս ընդ բազում ժամա֊
նակս յամենուստ ամփոփեալ Հելլէնք, ոչ ինչ գործ շա֊
հատակութեան աշխարհաւ գործեցին. և քաղաք իւրա֊
քանչիւր վեհերոտեալ մանաւանդ հանդարտէր։

ԺԸ. Իսկ յորմէ հետէ Աթենացւոց և այլոց քաղաքաց
Ելլադայ բռնաւորք՝ որք երկար ժամանակաւ տիրապե֊
տութեամբ իշխէին, մի ըստ միոջէ, բայց յայնցանէ որ 'ի
Սիկիլիա, ամենեքեան լուծեալ քակտեցան յաթոռոյն
ընդ ձեռն Լակեդեմոնացւոց. քանզի Լակեդեմոն հաստուած

'ի Դորիացւոց բնակեալ՝ ընդ երկար ամս 'ի խռովս շփոթից յուզեալ քան զայլ ամենայն ժողովուրդս, սակայն 'ի վաղուց անտի ստանայր զիւր գեղեցիկ օրէնս և վարչութիւն անբռնաւոր. և եղեն արդարև ամք աւելի քան չորեքհարիւր մինչև 'ի կատարած պատերազմիս, յորմէ հետէ նովին օրինօք քաղաքավարէր Լակեդեմոն, հզօր ինքնին, սահմանադիր լինէր և այլոց քաղաքաց: Այսպէս իբրև քակտեալ խորտակեցաւ լուծ իշխանութեան բռնաւորաց Եղլադայ, ոչ բազում ինչ ամօք զկնի դէպ եղև և պատերազմ Մարաթոնեան 'ի կռուել Մարաց ընդդէմ Աթենացւոց: Յետ պատերազմիս անցեալ 'ի վերայ ամք տասն, եւ վերստին բարբարոսն ամբոխիւ 'ի վերայ Եղլադայ առ 'ի ծառայութիւն զնա նուաճելոյ: Ի շաւիղն ահագին սպառնալեաց՝ զօրաւորագոյն յայնժամ Լակեդեմոնացիք 'ի գլուխ կացին աշխարհախումբ միաբանութեան Հելլենաց 'ի մարտակցութիւն: Իսկ Աթենացիք՝ 'ի գալ մերձենալ Մարաց, խորհուրդ կալան թողուլ զքաղաքն և ամբարձեալ ստացուածովք իւրեանց 'ի նաւս՝ եղեն նաւորդք հմուտք: Հասարակ հաւանութեամբ աշխարհօրէն վանեալ զբարբարոսն, ոչ յետ բազմաց զատուցեալ որոշեցան Հելլենք՝ կէսք յԱթենացիս, կէսք 'ի Լակեդեմոնացիս, և ոյք ընդվզեալք էին 'ի ձեռանէ արքայի, և որք կանուխ դաշնաւորք մարտադիր ընդդէմ նորա եղեն: Զօրացան սոքա ընդ ցամաք, և նոքա ընդ ծով նաւուք իւրեանց. և ոչ երկարեաց այս նոցա մարտակցութիւն, զի դժդմնեալ ընդ իրեարս Լակեդեմոնացիք և Աթենացիք մարտ եդեալ կըռուեցան ընդ միմեանս, և դաշնակիցք նոցա ընդ նոսա: Եւ որք միանգամ 'ի Հելլենաց ձեղքեցան յիւրեանս՝ յայս կամ յայն կողմն յաւելուլին. այնպէս զի 'ի Մարական պատերազմէ անտի ցայսօր, է զի 'ի դուրս զինուց, է զի 'ի խաղմ դուպարայած ընդ միմեանս և 'ի նուաճել զդաշնաւորս լծընկեցս՝ ընդ բազմապատիկ վտանգս ընդ կիրթ անցեալ՝ յամենայնի փորձ գտան:

ԺԹ. Լակեդեմոնացիք առանց հարկելոյ զդաշնաւորս իւրեանց, առաջնորդէին նոցա զօրավարութեամբ 'ի պատերազմի, և ողոքով իմն արբանեկէին նոցա 'ի յանձնառութիւն սակաւիշխան վարչութեան: Աթենացիք զրաւելով տակաւ ընաւախումբ դաշնաւոր քաղաքաց' իշխէին նոցա, բայց 'ի Քիացւոց և Լեսբիացւոց, և տային հարկս հարկանել արծաթոյ: Եւ եղեն նոցա 'ի պատերազմիս ընիկ իւրեանց պատրաստութիւնք մեծամեծք' քան 'ի բարգաւաճագոյն ժամանակս օժընդակութեան դաշնաւորաց:

Ի. Այսպիսի գոլ ես զվաղեմի անցս պատմութեան, մինչ զի անհնարին է աւանդելոյն ամենայնի մի ըստ միոջէ հաւատս ընծայել. մարդիկ որ զանցեալս զամենայն 'ի լուր ականջաց անխտիր, և զընիկ իւրեանց աշխարհին անգամ դէպս առանց քննութեան 'ի զրուցաց ունին: Զոր օրինակ ժողովուրդն Աթենացւոց կարծէ յԱրմոդեայ և յԱրիստոգիտոնէ սպանեալ զԻպպարքոս 'ի բռնակալութեան իւրում. և անգիտանայ ամենեւին եթէ Իպպիաս էր երէց յորդիս Պիսիստրատեայ և պայազատեաց զհայրն յիշխանութեան իւրում. իսկ Իպպարքոս և Թեսալոն եղբարք էին նորա: Ի կարծիս կասկածանաց Արմոդիոս և Արիստոգիտոն, եթէ 'ի դաւակցաց անտի իւրեանց հասուցեալ իցէ ոք ինչ մի յունկն Իպպիասայ' խորշէին հեռանային 'ի նմանէ իբրև 'ի գիտակէ դաւոյն նիւթելոյ, և 'ի մտի եդեալ չեւ ձերբակալ 'ի նմանէ լեալ' 'ի գործ մի յանդուգն դիմադրաւել, և 'ի պայմանեալ ժամադիր աւուրն հանդիպեալ Իպպարքեայ մերձ 'ի Լէոկորիոն 'ի հանդերձանս պատրաստութեան Համաթենական տօնին, և հարեալ սպանին զնա: Եւ այլ ինչ շատ' որ թէպէտ անմոռաց ժամանակացս, սակայն յոլովագոյնք 'ի Հելլենաց վրիպակ ունին զայնցանէ կարծիս: Օրինակի վասն, որպէս եթէ օրէն իցէ թագաւորաց Լակեդեմոնացւոց' ոչ զմի, այլ զերկուս տալ զիւրաքանչիւր քուէս. և թէ իցէ նոցա վաշտ մի հետի Պիտանատեան անուանեալ, որ չէ երբէք երևեալ

այսպիսի ինչ: Այսպէս առ բազում ապախտ լեալ հեռազօտութիւն ճշմարտութեան, և որ ինչ առձեռն է նոցա, այնմ միայն միտ դնեն:

ԻԱ. Եթէ յասացելոցս աստի հաւաստեաց՝ այնպիսի զպատմեալս ոք համարեսցի, որպէս և աւանդեցաւ 'ի մեզ՝ ոչ վրիպի. և ոչ որպէս քերթողքն առին երգել մեծապէս պաճուճեալ բանիւք. և ոչ դարձեալ որպէս վիպասանք զախորժալուրս յերիւրելով քան ճշմարտապատումս, առանց իրիք ցուցակութեան, և բազումք յայնցանէ առ երկարժամանակեայ հնութեան անհաւատալիք զառասպելաց ունելով կերպարանս. ուր զմերս շատ իսկ հնութեամբ հանդերձ, 'ի յայտնագոյն նշանակաց անտի, ճշգրտիւ գտակաւ կարգեալ տեսանիցէ: Զպատերազմս մեր այս, թէպէտ սովորութիւն է մարդկան մեծ համարել զայն որ զառաջեաւ ունին, և 'ի վախճանի սակայն զնախնեացն դարձեալ հրաշափառագոյն ասել, այլ յարդեացն իրաց ոք միտ դնել կամեսցի, ակն յայտնի մեծագոյն զսոյն քան զհամայն անցեալս գտանիցէ:

ԻԲ. Եւ որ բանախօսութիւնք են 'ի սմա՝ որ 'ի սկիզբն պատերազմաց, և որ արդէն 'ի խառն անդ կռուեին, դժուարին էր արդեօք ճշգրիտ 'ի յուշ ածեալ և բան առ բան 'ի մէջ բերել. որոց ականջալուր եղէ, և զոր յայլոց վկայութենէ ընկալայ, վասն որոյ որպիսի ինչ վայելուչն թուեցաւ ինձ ըստ հանգամանաց անձին՝ դիպաց և պայմանի, զմերձաւորագոյն արդեամբք ասացելոցն յօրինեցի բանս: Իսկ որ 'ի պատերազմունս գործեցան՝ ոչ 'ի կարծ ինչ կամ 'ի լուր զարթուցեալ, արժանաւոր զայնոսիկ 'ի գիր դատեցայ, այլ որոց ինքնին անձամբ 'ի մօտոյ ականատես, և որոց 'ի բանից այլոց մանր քննեալ ճշմարտութեամբ հասի 'ի վերայ: Եւ արդարև մեծի երկանց պէտք եղեն, զի ոչ զնոյն հաւասար վկայութիւն զանցից իւրաքանչիւր հանդիսատեսքն տային, այլ ըստ մտաց հաւանելեաց և ըստ յուշոյ յիշատակելեաց օտար և այլ ընդ այլոյ: Եւ թերևս չունե-

լով պատմութեանս կերպարան վիպասանութեան՝ ոչ ընծայեսցի ախորժական լսելեաց. բայց որ 'ի ստուգութիւն եղելոց 'ի սմա միտ դնել կամեսցի, ապառնեաց երբեմն՝ ըստ մարդկեղէն պայմանի կենաց հանգիտագունից դիպաց՝ օգտակար զայս և կարևոր դատեսցի, շատ իսկ օրինակս ունելով զառաջեաւ. և զի յանկապուտ ստացուած ժառանգութեան և ոչ 'ի մրցութիւն հանձարոյ և 'ի լուր վաղանցուկ յօրինեցաւ սա:

ԻԳ. Ի նախնեաց այտի գործոց շահատակութեանց մե-հագոյն երևեցաւ Մարականն պատերազմ. թէպէտ 'ի կըրկին ծովամարտ և 'ի դոյնչափ հետևակամարտ կռիւս վախճան էառ փութով: Իսկ այժմեանս այս երկարաձիգ յոյժ եղև, և առ սովաւ աղէտք ծանունք յԵլլադա քան 'ի դոյնչափ ժամանակս երբէք հանդիպեալ. զի ոչ ուրէք բնաւ այնչափ քաղաքանի քանդեալ ամայացան պատերազմաւ, որ 'ի խժից և որ 'ի նոցուն իսկ 'ի հակառակամարտ ախոյենից, և որ 'ի բռուն անկեալ խախտեցան 'ի բնակչաց. ուր թողից և զբազմութիւն գնացական վտարանդեաց, և զամբոխ մարդկան կոտորելոց սրով 'ի պատերազմունս և յաղմուկս խռովութեանց: Եւ զոր երբեմն 'ի լուր ականջաց լուեալ, և դուն ուրէք յարդեանց իրաց հաւաստեալ, չմնաց ինչ արդ անհաւատալի. որպէս 'ի կողմանս կողմանս աշխարհի սասանութիւնք երկրի ահագինք յոյժ. խաւարմունք արեգական յաճախագոյնք քան որ երբեմն 'ի վաղ ժամանակս յիշատակեալ. երաշտութիւնք ծանունք՝ յորմէ և սով. և որ ոչ փոքր վնաս գործեաց՝ ապականեալ զկողմն մի աշխարհի, ախտ ժանտ մահաբեր. և համանգամայն չարիքս այսոքիկ զոյգ ընդ պատերազմին եկեալ հասեալ 'ի վերայ:

Սկիզբն արարին կռուոյս Աթենացիք և Պելոպոնեսացիք՝ լուծանելով զերեսնամեայ դաշինս խաղաղութեան որ զկնի առման Եւբիոյ, և թէ առ ինչ լուծան դաշինքն կանխեցի եդի զպատճառսն, նոյն և զսկիզբն դժտութեանս,

որպէս զի մի՛ խնդրեսցի առ յապայս, թէ ուստի՛ պատերազմս այս մեծ 'ի Հելլէնս: Քանզի զստուգագոյն պատճառս՝ թէպէտ և բանիւ անյայտ, զԱթենացիս գիտեմ, որոց մեծացեալ յոյժ և ահարկու Լակեդեմոնացւոց լեալ ստիպէին զնոսա 'ի պատերազմ: Իսկ որ յայտնապէս ծանուցեալ հասարակաց պատճառք՝ այս են, որով և լուծանելով զդաշինս եկին 'ի կռիւ:

ԻԴ. Եպիդամնոս էր 'ի մուտս Յոնիական ծոցոյն 'ի յաջակողմն կոյս, և սահմանորդք նորա Տաւղանտացիք խուժք 'ի Լիւրիկեցի ցեղից: Հաստուած էր սա 'ի Կորկիւրայ, զոր նստոյց Փալիոս որդի Երատոկլեայ 'ի Հերակլեանց անտի յազգէ Կորնթացի, և ըստ նախնեաց օրինաց կարգեալ յայն գործ 'ի մայր քաղաքէն[1]: Խառնեցան 'ի գաղթականութիւնս և ոմանք 'ի Կորնթացւոց և 'ի Դորիացի ցեղից: Յետ ժամանակաց մեծացաւ յոյժ քաղաքն Եպիդամնեայ և լցաւ մարդկութեամբ. այլ ընդ երկար յառաջին խռովս, որպէս պատմեն, և 'ի յարձակմունս սահմանակից բարբարոսաց 'ի միում ուրեք 'ի գուպարի մեծապէս հարուածեալք՝ անկան յոյժ 'ի նախկին զօրութենէն: Եւ 'ի յետին ժամանակս՝ յառաջ քան զմերս պատերազմ, հալածեալ մերժեաց ժողովուրդն զձոխս 'ի քաղաքէն, որոց ընդ հրոսին բարբարոսաց եկեալ 'ի վերայ նեղէին յարձակմամբ զբնակիչսն ընդ ծով և ընդ ցամաք: Տագնապեալ ամրականաց Եպիդամնեայ յերեսաց թշնամեաց՝ հրեշտակութիւն 'ի Կորկիւրա արարին, իբրու 'ի մայր գաղթականին յաղերս՝ չառնել զնոսա անտես 'ի սպառսպուռ յաւեր ապականութեան, և հաշտարար խաղաղութեան կալ ընդ վտարանդիս հալածականս և ընդ ամբոխին, և ապրեցուցանել զնոսա 'ի խժական սրոյն: Եւ աղաչաւո-

[1] Օրէնք էին նախնեաց 'ի կամել գաղթականին առաքել յիւրմէ նոր հաստուածս արտաքոյ, 'ի մայր քաղաքէն խնդրել իւրեանց առաջնորդ, և գրով դաշանց ծանուցեալ զիրաւունս նորա, առնուլ ընդ իւրեանս զհուրն սրբազան:

րացն նստեալ 'ի մեհենին Հերայ, զայս իւրեանց աղերս առաջի առնէին։ Իսկ Կորկիւրացւոց ոչ ինչ երեսս առնելով պաղատանաց սրանցն՝ արձակեցին զնոսա ունայնս։

ԻԵ. Իբրև գիտացին Եպիդամնացիք թէ ոչ մի յոյս գտցի նոցա օգնականութեան 'ի Կորկիւրացւոց՝ 'ի տագնապ տարակուսին առաքեցին հարցանել 'ի Դելփիս զաստուածն. «Տացե՞ն զքաղաքն 'ի ձեռս Կորնթացւոց իբրև հիմնադրաց գաղթականութեանս, և ժառեսցե՞ն 'ի նոցանէ ձեռն օգնական»․ որոց պատասխանի եղև 'ի գից. «Տո՛ւք և կալարուք զնոսա ձեզ յառաջնորդս»։ Եւ Եպիդամնացւոց գնացեալ 'ի Կորնթոս, ըստ բանի պատգամին յանձն արարին 'ի նոսա զգաղթականն, ցուցանելով 'ի Կորնթեայ ունել զսկիզբն, յայտ արարեալ միանգամայն և զբան հրամանի գից. և աղաչէին մի թողուլ զնոսա 'ի վտանգ կորստեան, այլ վաղվաղել յօգնութիւն։ Իսկ Կորնթացիք՝ ըստ օրինի արդարութեան, խոստացան ձեռն տալ նոցա, զի ոչ նուազ իւրեանց էր գաղթականն այն քան Կորկիւրացւոց. միանգամայն և վասն ատելութեանն ընդդէմ Կորկիւրացւոց՝ որոց 'ի Կորնթեայ հատուած գոլով, անգոսնեալ քամահէին զնոսա, և յամենաժողով տօնս զլանային առաքել զօրինագրեալ նուէրս պատարագաց, և չթողուին առն կորնթացւոյ՝ ըստ օրինի այլոց գաղթականաց նախընծայ 'ի զոհագործութիւնս լինել, և ունչս իմն առնել թուէին. զի փարթամացեալ ընչիւք հաւասար մեծահարուստ քաղաքաց Հելլենացւոց՝ հզօրք էին զօրութեամբ 'ի հանդերձանս պատերազմի, որպէս զի ապարթանեալ խրոխտալ ընդ բազմութիւն նաւաց իւրեանց. և թէ նախկին բնակիչք Կորկիւրայ Փէակացիք իցեն՝ մեծահամբաւք 'ի նաւագնացութիւնս։ Եւ այսպէս առաւել քան զառաւել նաւաստականին զհետ լինէին. և չէին իսկ արդարև անզօրք, զի հարիւր և քսան նաւք էին նոցա պատերազմիկք՝ յորժամ սկիզբն արարին պատերազմին։

ԻԶ. Վասն ամենայնի այսոցիկ բողոք կալեալ Կորնթացիք՝ առաքեցին խումբ մի ինքնակամ մարդկան յօգնականութիւն յԵպիդամնոս՝ հրաման տուեալ նոցա և բնակութեամբ իսկ նստել անդ, եթէ այնպէս ինչ հաճոյ իցէ նոցա: Դարձեալ և յԱմպրակիացւոց և 'ի Ղևկադեանց և յիւրեանց անտի քաղաքացւոց պահանորդս ետուն նոցին: Չուեալ գնացին ոտքա ընդ ցամաք յԱպոլոնիա՝ որ է հատուած բնակեալ 'ի Կորնթացւոց, 'ի միտս կասկածոտս թէ գուցէ խափան ինչ լինիցի նոցա ծովագնաց չուոյն 'ի Կորկիւրացւոց անտի: Իբրև զգացին Կորկիւրացիք զգալուստ նորոյ գաղթականին և զպահնակ գնդին յԵպիդամնոս, և զանձնատուր լինել քաղաքին 'ի Կորնթացիս՝ սրտնեալ զչարեցան: Եւ փութացեալ խաղացին քսան և հինգ նաւուք՝ արձակելով զկնի և այլ նաւախումբ, մեծասաստ պատուէր հրամանի 'ի վերայ դնելով՝ 'ի ներքս 'ի քաղաքն զտարագիրսն ժողովելոյ. քանզի վտարանդեացս այսոցիկ Եպիդամնացւոց 'ի Կորկիւրա գնալով, համացեղս լինել ընդ նոսա և համարիւն ցուցանէին 'ի շիրիմս նախնեաց նոցին, և յաղերս պաղատանաց դարձուցանել զնոսա 'ի հայրենիս խնդրէին, և զպահանորդ զօրն և զնոր հաստուած գաղթին՝ առաքեալս 'ի Կորնթացւոց, 'ի բաց արձակել: Եւ յանսաստել Եպիդամնացւոց հրամանին՝ խաղացին Կորկիւրացիք քառասուն նաւուք հանդերձ տարագիր վտարանդեօք, հաստատել զնոսա 'ի բնակութիւն իւրեանց և զօգնական գունդ Լիւրիկեցւոց ընդ նոսա: Եւ մինչև պատնէշ պաշարմամբ զքաղաքն փակեալ, պատգամ 'ի ներքս ետուն, զի որոց միանգամ կամք իցեն յԵպիդամնացւոց և կամք յեկաց՝ ելեալ մեկնեսցին ազատ 'ի քաղաքէն, ապա թէ ոչ ամենեքեան հաւասար ընդ թշնամիս գրեսցին: Եւ 'ի չանսալ նոցա և վերջնում՝ փակեալ պաշարեցին զքաղաքն՝ որ է 'ի վերայ կրճի նեղցին:

ԻԷ. Ընդ լուր պաշարման քաղաքին Եպիդամնացւոց՝ որ 'ի ձեռն հրեշտակաց հասեալ, զօրաժողով եղեն Կորն-

Թացիք և քարոզ ետուն կարդալ, թէ որք կամեսցին բնակութեամբ երթալ յԵպիդամնոս, 'ի նոյն 'ի հաւասար գաղթականին վայելեսցեն յիրաւունս. իսկ որք յամելով 'ի չուն՝ կցորդ գաղթականութեանս լինել յօժարեսցին, յիսուն դահեկան յաւանդ եդեալ օրէն իցէ նոցա մնալ: Եւ ամբոխ բազում էր նաւելոց, և ոչ սակաւ էր թիւ որոց յաւանդ զարծաթն արկին: Խնդրեցին և 'ի Մեգարացւոց տալ նոցա նաւս, եթէ երբեք արգելուցուն Կորկիւրացիք զնաւագնաց չու նոցին: Եւ կազմեալ պատրաստեցան Մեգարացիք ութ նաւուք ընկերել նոցա Ճանապարհին, և Պալէացիք 'ի Կեփաղոնիոյ չորիւք. խնդրեալ և յԵպիդամնացւոց՝ ընկալան նաւս հինգ, 'ի Հերմիոնաց նաւ մի, 'ի Տրեզինաց՝ երկուս, 'ի Լեւկադեանց՝ տասն, և յԱմպրակիացւոց՝ ութ: Ի Թեբացւոց խնդրեցին արծաթ և 'ի Փլիզիացւոց. իսկ յԷլէացւոց արծաթ և նաւս դատարկս: Նոցուն ինքեանց Կորնթացւոց էին նաւք զինեալք երեսուն, և երեք հազար զօրական ասպարակիր:

ԻԸ. Իբրև իրազգած եղեն Կորկիւրացիք զպատրաստութեանս, գալով ընդ դեսպանս Լակեդեմոնացւոց և Սիկիոնացւոց 'ի Կորնթոս, պահանջէին 'ի Կորնթացւոց յետս կոչել յԵպիդամնեայ ընդ պահանորդ զօրուն և զհատուած ժողովրդեան, զի չկայր ինչ ընդ նոսա և ընդ Եպիդամնացիս. և 'ի չանսալն նոցա այսմ՝ առաջի արարին իրաւարարս կացուցանել զքաղաքս Պելոպոնեսացւոց, զորս և հաւասար հաւանութեամբ ընտրեսցեն. զի զոր և դատեսցին նոքա տեարս լինել գաղթականին, նոցա լիցի իշխել: Կամէին ևս և 'ի հրամանս պատգամին դիմել՝ խորշելով միշտ 'ի կռուոյ, ապա եթէ ոչ 'ի բռնութենէ հարկին ստիպեալ, ասէին, արասցուք մեզ բարեկամս և թիկունս՝ զորս ոչ ախորժիցէք, օտարս ամենևին քան զոր այժմս ունիմք: Որոց պատասխանի արարին Կորնթացիք. « Եթէ զնաւաց դումարտակ և զբարբարոսաց գունդ յԵպիդամնեայ 'ի բաց արձակեսջիք, մարթ է գալ 'ի խորհուրդ զիրացդ.

բայց նախ քան զայս՝ չէին իրաւունք 'ի պաշարումն զքաղաքն արկեալ և յատեան դատաստանի զմեզ կոչել»։ Որում բանս ընդդէմ եդին և Կորկիւրացիք. «Եթէ և դուք 'ի բաց զձերոյինսդ յԵպիդամնեայ յետս կոչիցէք՝ լուիցուք բանիդ։ Դարձեալ հաւան եմք՝ ձեզ և մեզ մնալ յերկրին և դուլ զինուց առնել, մինչև լիցի իրաւախոհութեամբ վճարել զդատն»։

ԻԹ. Բայց Կորնթացիք և ոչ միում յայսցանէ հաւանեալ, և զի կազմ էին նաւք և դաշնաւորք եկեալ հասեալ, արձակեցին նախ քարոզ առ Կորկիւրացիս 'ի հրաւիրակ մարտի, և ինքեանք ամբարձեալ յեւթանասուն և 'ի հինգ նաւս զերկու հազար ասպարակիր զօրականս՝ խաղացին յԵպիդամնէ 'ի կռիւ ընդ Կորկիւրացիս։ Եւ զօրավարք էին հանդիսի նաւաց Արիստեւս Պելլիկեան, Կալլիկրատէս որդի Կալլէոսի և Տիմանոր Տիմանթեայ։ Իսկ ցամաքային զօրուն առաջնորդք Արքետիմոս որդի Եւրիտիմեայ և Իսարքիդաս Իսարքեան։ Իբրև հասին սոքա յԱկտիոն յերկիրն յԱնակտորիոյ, ուր է մեհեան Ապոլոնի 'ի բերան Ամպրակիոյ ծոցուն, աճապարեալ արձակեցին Կորկիւրացիք ընդ առաջ սոցա զնուիրակ իւրեանց յակատ մի, արգելուլ զնոսա մի՛ անդրագոյնս խաղալ, և ինքեանք փութացան զինել զնաւս, զհնոցն կազմելով զբեդեկ, և զայլ նորս 'ի վերայ յաւելեալ։ Եւ զի ոչ բանս խաղաղութեան յերեսաց Կորնթացւոց ածէր քարոզն, և նաւք նոցա ութսուն վաղ իսկ զինեալք, և քառասունք զԵպիդամնեաւ նստեալ 'ի պաշարման քաղաքին, յառաջեալ Կորկիւրացւոց՝ մարտեան 'ի ծովամարտ. և տանելով յաղթութիւն մեծ խորտակեցին 'ի Կորնթացւոց անտի նաւս հնգետասան։ Դէպ եղև 'ի նմին իսկ աւուր՝ որոց զԵպիդամնեաւ նստէին, դաշամբ խաղաղութեան առնուլ զքաղաքն, պայմանաւ՝ զօտարս 'ի վաճառ հանեալ և զԿորնթացիս ունել 'ի կապանս, մինչև այլազգ ինչ սահմանեսցի վասն նոցա։

Լ. Յետ նաւամարտին նշան յաղթութեան կանգնեալ

Կորկիւրացիք 'ի Լեւկիմնէ 'ի կատար սարաւանդին Կորկիւրայ, և զամենայն գերին ընդ սուր հանեալ, 'ի պահ կալան զԿորնթացիս ։ Յետ պարտութեան Կորնթացւոց և դաշնաւորաց նոցին, և մեկնելոյ իւրաքանչիւր յերկիր իւր, տիրապետեալ կալան Կորկիւրացիք զծովեզերեայս առ հասարակ. և նաւարկեալ անտի 'ի Լեւկադա 'ի գաղթականն Կորնթացւոց հինաւեր աւերեցին զերկիրն, և զԿիւլենէ զնաւարան Եղէացւոց հրձիգ արարին, փոխանակ զի ձեռն նոցա ընդ Կորնթացիս էր, սատարութեամբ նաւուց և արծաթոյ ։ Եւ յետ ծովամարտին զօրացան սոքա 'ի ծովու զմեծ մասն տարւոյն, և հասեալ նաւուք իւրեանց աւարառ վարէին զերկիր դաշնաւորաց Կորնթացւոց. մինչև հայեցեալ 'ի վիշտս նիզակակցաց յընթացս ամառայնոյն արձակեցին Կորնթացիք նաւս և զօրս՝ որ բանակեալ նստան յԱկտիոն առ Քիմերոնեաւ յերկրին Թեսպրոտեայ, 'ի պահ զգուշութեան Լեւկադայ և այլոց քաղաքաց՝ որք բարեկամք նոցա էին ։ Հարին և Կորկիւրացիք ընդդէմ նոցա զբանակս իւրեանց հետևակախումբ զօրու և նաւուք 'ի Լեւկիմնէ, և հանդարտեալ լռեցին զամառն ողջոյն, մինչև 'ի գալ ձմերայնոյ ելեալ մեկնեցան իւրաքանչիւր 'ի տուն իւր ։

ԼԱ. Յետ ծովամարտին՝ զամն ողջոյն և զյաջորդ ամն մեծաւ ցասմամբ Կորնթացիք ընդ կորանալ իւրեանց առաջի Կորկիւրացւոց, անդադար լինէին 'ի կառոյցս նաւաց և 'ի հանդերձանս հզօր գումարտակի, վարձելով 'ի Պելոպոնեսեայ և յայլոց քաղաքաց Եղլադայ ռոճկօք իւրեանց թիավարս ։ Ընդ մեծ նոցա այս պատրաստութիւն զահի հարեալ Կորկիւրացիք, և զի ոչ ընդ ումեք 'ի Հելլենաց դաշնաւորք էին, ոչ 'ի համար նիզակակցաց Աթենացւոց մտեալ և ոչ 'ի Լակեդեմոնացւոց, խորհեցան առ Աթենացիս դիմել, և ջանալ հնարել ձեռն օգնականութեան 'ի նոցանէ գտանելոյ ։ Որում իրազեկ Կորնթացիք փութացին և ինքեանք հրեշտակութեամբ յԱթէնս, զի մի գումարտակաւ նաւաց նոցա ստուարացեալ զօրութիւն Կորկիւրացւոց խափան

ըլցի վախճանի պատերազմին, որում ըղձիւք ըղձայի։ Ի խմբել ժողովոյ քաղաքայնոց՝ մատեան հակառակ իւրեանց 'ի բանախօսութիւն, այլ նախ Կորկիւրացիք կալան 'ի խօսել զայս ձև օրինակի.

ԼԲ. « Յիրաւի է, արք Աթենացիք, որոց ոչ ինչ երախտաւորութիւն ցուցեալ, և կանուխ մտադիւր նիզակակցութեամբ օգտակար երևեալ, և գայցեն առ մերձաւորս՝ որպէս մեքս այսօր, ձեռն սատար 'ի նոցանէ ժտելով, պարտ է նոցա նախ հաւաստեաւ, մանաւանդ քան զամենայն՝ զայն յայտ առնել, թէ զոր խնդրենն յօգտակարաց համարի են, և կամ գոնեա ոչ 'ի վնասակարաց, և թէ զշնորհս երախտեաց հաստատութեամբ անմոռաց ունիցին. ուր եթէ և ոչ մի ինչ յայսցանէ պարզապէս առաջի առնել կարիցեն, մի ինչ խոժոռեսցին այնպիսիք, եթէ չհանդիպին որում խնդրենն։ Կորկիւրացիք արդ մեծայոյսք զայս ամենայն կարևոր պայմանս ձեզ առաջի առնելոյ, առաքեցին զմեզ հրեշտակութեամբ առ ձեզ 'ի խնդիր նիզակակցութեան ընդ ձեզ։ Այլ այնպէս իմն դէպ եղև, զի գնացս մեր այս՝ 'ի կարևոր պէտս հարկիս, ամենևին անհեդեդ ձեզ, և անշահաւոր 'ի մեր կողմն երևիցի։ Եւ արդարև 'ի սկզբանէ անտի ոչ ընդ ումեք ինքնակամ 'ի դաշն նիզակակցութեան մտեալ, գամք արդ այսօր զնոյն յայլոց խնդրել, մինչդեռ 'ի պատերազմիս ընդ Կորնթացւոց անոք և անօգնական գտանիմք. և կարծեցեալն մեր երբեմն զգօնութիւն՝ մի 'ի կամս ընկերին 'ի նոյն 'ի նոցին վտանգս ըմբռնել, յայտնապէս այժմ անխորհրդականութեան և տկարութեան տայ նշանակ։ Ի նաւակռուին մղելոյ ինքնին միայնակ վանեալ ըզԿորնթացիս, որք արդ մեծաւ պատրաստութեամբ 'ի Պելոպոնեսեայ և 'ի կողմանց Ելլադայ գան 'ի վերայ մեր, և մեք մերայնովս միայն ուժով անհնարին տեսանեմք ընդդէմ նոցին ոստնել. և 'ի տոյժս մեծի վտանգին՝ եթէ նկուն 'ի նոցանէ լինիցիմք, բռնադատիմք 'ի ձեր և յայլոց դիմել յօգնականութիւն։ Ներել աղաչեմք, զի ոչ առ չարու-

թեան, այլ վրիպակ խորհրդով մեղուցեալ, փոխանակ նախնոյ յուլութեանս՝ համարձակիմք արդ գալ 'ի հակառակ կամս:

ԼԴ. « Եթէ հաւանեալ լուիջիք մեզ, 'ի բազում դըրխոց մերս այս դէպ շահաւէտ ձեզ լինիցի: Նախ՝ յանիրաւի զրկելոցս և ոչ ումեք վնասակարարաց ձեռն տայք. Երկրորդ անգամ՝ 'ի տագնապ տարակուսի ըմբռնելոց ընդունակ լեալ, 'ի մշտայուշ վկայութիւն զշնորհս ձեր կարգէք. և թէ է մեր նաւատորմ հզօր զինի ձերոյն: Խորհեցարուք արդ որպիսի՛ բարեբաստութիւն դժուարագիւտ վասն ձեր, և զի՞նչ տխրագոյն քան զայս յաչս թշնամւոյն. զի որ մեծակշիռ գանձուք և շնորհակալու գոհութեամբ յօժարամիտք էիք յարել 'ի ձեզ ժողովուրդ շատ իսկ հզօր, ինքնամատոյց նոքա արդ առանց տուժի ծախուց անձնատուր ձեզ լինին, բերելով ձեզ 'ի միտս հասարակաց համբաւբարի, շնորհս երախտեաց առ 'ի ձէնջ սատարելոց, և յաւելուած զօրութեան, որ ընդ չարս ամաց սակաւուց իցէ հանդիպել միահաղոյն այսոցիկ ամենեցուն: Զի որոց 'ի խնդիր նիզակակցութեան լինիցին, սակաւուց է ոչ ինչ նուազ քան զակնկալեալն իւրեանց ապահովութիւն և փառս մատուցեալ ընծայել: Իսկ պատերազմն՝ յորում պիտանացու ձեզ լինիցիմք, եթէ իցէ ոք 'ի ձէնջ որ չհամարիցի զայն մօտալուտ, մեծապէս խաբի այնպիսին 'ի խորհուրդս իւր, և չառնու 'ի միտ եթէ Լակեդեմոնացիք խեթիւ միշտ ընդ ձեզ՝ զպատերազմ կամին. և Կորընթացիք հզօրք առ նոսա և ձեր ոխերիմք, ճգնին հնարին արդ խափան լինել առաջարկութեանս, զի մի հաւասարք ընդդէմ նոցա ստախեսցուք. և լիցի նոցա վրիպել 'ի կրկնակի նկատեալ խորհրդոց, այն է վնասակար մեզ լինելոյ, և զզօրութիւն իւրեանց ամրացուցանելոյ: Վասն որոյ գործ մեր է, նախահոգակ լինել՝ մեզ առաջարկելով և ձեզ ընդունելով զմարտակից դաշնակցութիւն, և կանխել մանաւանդ դարանակալ նոցին լինել քան անագան ընդդիմամարտ »:

ԼԴ. «Եթէ ասիցեն՝ չեն իրաւունք ձեռն տալ ձեզ գաղթականաց նոցա. զայս գիտասցեն նոքա՝ եթէ ամենայն գաղթական քաղցրութեամբ երախտաւորեալ պատուէ ըզմայր քաղաքաց իւրաքանչիւր. իսկ զրկեալն՝ մերժեալ օտարանայ 'ի նմանէ։ Ոչ 'ի ծառայութիւն ստրկութեան, այլ 'ի հանգիտապատիւ նոցին ընկացն խախտեցան նոքա 'ի հայրենի աշխարհէն։ Եւ զի մեծապէս անիրաւէին՝ յայտ է, զի 'ի դատ և յիրաւախոհութիւն վասն Եպիդամնեայ հրաւիրեալ, զինու բռնութեամբ մանաւանդ քան արդարակշիռ հաւասարութեամբ կամեցան առնուլ զվրէժ վնասուն։ Եւ օրինակ ձեզ, զոր առ համացեղս իւրեանց առ մեզ գործեցին, զի մի 'ի խաբկանս նոցա ըմբռնեալ՝ վաղվաղեցէք տեղի տալ աղաչանաց նոցուն։ Զի որում դուն ուրեք ստորջանալ է ընդ վայրապար շնորհս իւր առ թշնամին՝ նմա է աներկեան կեալ։

ԼԵ. «Ընկալեալ ձեր զմեզ, որ չեմք ընդ ումեք դաշնակիցք, ոչ լուծանէք ամենևին զուխտ դաշանցդ ընդ Լակեդեմոնացիս։ Քանզի այսպէս ասացաւ 'ի պայմանսդ. «Օրէն իցէ քաղաքաց Հելլենացւոց՝ որոց չիցէ ընդ ումեք բան դաշնաւորութեան, երթալ յարել ընդ ում և ախորժիցեն»։ Եւ դժպհին այն է, եթէ ներեսցի Կորնթացւոց ոչ միայն 'ի դաշնաւորաց նոցա, այլ և 'ի քաղաքաց Ելլադայ, ոչ ինչ պակաս և 'ի ձերոց հպատակաց վարձկանեալ լնուլ զնաւս, և զմեզ արգելուլ յառաջարկեալ դաշնակցութենէս, և որ այլ ուստեք իցէ ակնկալութիւն օգնականութեան. և ձեզ 'ի յանցանս համարել հաւանութիւնդ ընդ աղերս խնդրուածաց մերոց։ Եւ կարի իսկ յիրաւունս մարթ էր մեզ բողոքել զձէնջ 'ի չկարելս զձեզ հաւանեցուցանել, զի զվտանգեալս զմեզ և ոչ զձեր թշնամիս՝ մերժէք. և որ ձեր ոսոխք են և պատերազմողք՝ չարգելուք և չտեսանելոյն իսկ առնէք ստուարացուցանել զզօրութիւն նոցա յերկրէ իշխանութեան ձերոյ, որ ամենևին իսկ անիրաւ է։ Այլ պարտ է, կամ հրաման տալ, մի

զոք 'ի ձերոց այտի վարձկանել, և կամ մեզ իսկ՝ որչափ և հաճոյ իցէ ձեզ, առաքել զօր 'ի Թիկունս, և ընդունել յայտնապէս 'ի դաշնաւորս՝ ձեռն տալով մեզ։ Բազմապատիկ՝ որպէս 'ի սկզբան անդ կանուխ ասացաք, ցուցանեմք ձեզ օգուտս. և որ մեծն է, զի նոքին Թշնամիք մեր են, և աներկբայ իսկ՝ Թէ չեն անզօրք ոմանք, այլ շատ իսկ բաւականք 'ի պատուհասել զնչկահեալս 'ի ներքուստ ձեռին նոցա։ Եւ զի 'ի ծովու նաւական ձեզ մատուցանելով մարտակցութիւն, և ոչ 'ի ցամաքի հետևակախումբ կռիւ, չէ 'ի դէպ ձեզ խորշել. մանաւանդ եթէ ձեռնհաս ինչ էր ձեր՝ չԹողուլ այլում ումեք ժողովրդեան ստանալ նաւս, բայց եթէ որ հաստատութեամբ երաշխաւորել զձեր բարեկամութիւն կարասցէ։

ԼԶ. «Իսկ եթէ ոք ընդ օգտակարութիւն իւրն հաւանեալ, խիթասցէ սակայն թէ գուցէ ընդունելութեամբ նոցին լուծցին դաշինքն, գիտասցէ այնպիսին զի խէթ երկիւղին յաւելեալ 'ի զօրութիւն՝ ահաւորագոյն զձեզ Թշնամեոյն արասցէ. իսկ աներկեւանութիւնդ 'ի չընդունելդ զմեզ և 'ի տկար գտանելդ, արհամարհ զձեզ և խրոխտագոյն զԹշնամիսն գործեսցէ։ Դարձեալ, ոչ ևս այլ զԿորկիւրայ, այլ վասն Աթենացւոց քաղաքին առաւել արժան է հոգալ. զի ոչ իմաստութեամբ ոք զնմանէ խորհիցի, որ առ գուրս 'ի մերձաւոր պատերազմին, յոր ինչ առձեռն է միտ դնելով՝ դեդեւեսցի յաւելուլ ինքեան քաղաք մի, որոյ ընդ բարեկամութիւն և ընդ Թշնամութիւն շատ ինչ խտիր է։ Քանզի քաջադէպ ունելով նորա զիւր նիստ 'ի վերայ անցից Իտալիոյ և Սիկիլիոյ՝ չԹողու անտի նաւաց միջամուխ 'ի Պելոպոնես լինել, և ոչ այտի առ մեզ նաւարկել, չասացից և զայլ շահս օգտից։ Եւ բանից գլուխ խօսիցս, որ ինչ հասարակաց և որ ինչ առանձին շահ յընդունելոյդ զմեզ 'ի մի բովանդակեալ յայտնիկ։ Երեքեան առ Հելլենս յիշատակելոյ արժանի նաւախումբք. առաջինն՝ ձերդ, երկրորդ՝ մերս, և երրորդ՝ Կորնթացւոցն. որ եթէ

առ չփութոյ ձերոյ գլեսցեն Կորնթացիք զմեօք 'ի բանս հրեշտակութեան, և գայցեն երկոցունց ծովային զօրութիւնք 'ի մի, առաջի կայ ձեզ այնուհետև ընդ Կորկիւրացւոցն և ընդ Պելոպոնեսացւոց միանգամայն մրցել. իսկ յընդունելդ զմեզ՝ մերովս բազմութեամբ նաւաց ելանիցէք ընդ նոսա 'ի ծովամարտ »: Զայս Կորկիւրացիք խօսեցան, զորոց զկնի խօսել կալան Կորնթացիք այսպէս.

ԼԷ. « Եւ զի ոչ զդաշնակցութենէ միայն արարին Կորկիւրացիք բանս, այլ զի և անիրաւս զմեզ ջանացան ցուցանել և տարապարտուց ընդդէմ նոցա յարուցեալս, հարկ է և մեզ նախ երկոցունց այսոցիկ առնել պատասխանի, և ապա ուրեմն 'ի մերս փութալ յառաջարկ, զի ճշգրտագոյն խելամուտ խնդրոյն լինիցիք, և մի զկարիս նոցա յանպատճառս ինչ մերժիցէք: Խոհական զգուշութեամբ, ասեն, ոչ ընդ ումեք դաշնաւորեալ, այլ լաւ ևս ասասցուք, առ չարագործ խորամանկութեան, և ոչ 'ի խնամս ինչ առաքինութեան զայս ճանապարհ կալեալ նոցա. ոչ զոք կամելով դաշնակցութեամբ վկայս ապիրատութեան իւրեանց ունել, զի մի կշտամբեալք 'ի նոցանէ ամօթապարտք լինիցին: Եւ զի քաղաք նոցա ինքնաբաւ դիրիւքն ներէ նոցա անիրաւել ընկերին, ինքնօրէն գան 'ի ձեռն դաշանց իրաւախոհ լինելոյ. վասն զի հազիւ երբեք առ օտարս նաւագնացք նոքա, զայլս 'ի հարկէն բռնադատեալ առ իւրեանս տեսանեն: Եւ յայսմ ահա գեղեցիկս բաղբաղեն նոքա զդաշնաւորութիւն, ոչ զի մի մեղաց օտարին կցորդ լինիցին, այլ զի միայնակ մեղանչիցեն, և յոր ինչ ձեռն նոցա ժամանէ՝ անարգել բռնանալ մարթասցեն, և յանտես գաղտնութեան յաւելաստացութիւնս և յամենայն յափշտակութիւն անպատկառ ընթանայցեն: Որ եթէ որպէս ախորժեն ցուցանել, արք արդարակորովք էին նոքա, որչափ անըմբռնելիք յօտարէն՝ նոյնչափ ևս արժան էր փայլել նոցա 'ի պայծառ առաքինութիւնս, և հաւասարք յարդարութեան 'ի հատուցանելն և յընդունել:

ԼԸ. «Բայց ոչ առ այլս և ոչ առ մեզ այսպիսիք ոմանք երևին նոքա. գաղթական մեր գոլով հանապազ ապստամբք, և այսօր իսկ պատերազմողք են ընդ մեզ. զի ոչ 'ի չարակրութիւն խախտեցաք, ասեն, 'ի հայրենի աշխարհէն, որպէս և մեք ոչ 'ի թշնամանս և նախատ առ 'ի նոցանէ լինելոյ՝ կարգեցաք զնոսա 'ի գաղթականութիւնդ, այլ զի հրամանատար նոցին կացցուք, և զպատշաճական յարգ մեծարանաց 'ի նոցանէ ընկալեալ սքանչելի լինիցիմք: Այլոց 'ի գաղթականաց մերոց պատուեալ և սիրելի եմք և ցանկալի, որով յայտ է թէ 'ի հաճոյ լինել մեր բազմաց, յանիրաւս անհաճոյք սոցին գտանիմք. և տարապարտ արդեօք զինուորեալք ընդդէմ նոցա՝ եթէ չէր առ 'ի նոցանէ տարօրինակ անիրաւեալ: Եթէ մեղուցեալ ինչ էր մեր ընդդէմ նոցա, քանի՛ վայելուչ էր նոցա տեղի տալ ցասման մերոյ, և մեզ ամօթ յայնժամ ոտնհար զգօն ցածութեան նոցա լինել: Թշնամանօք և ամբարհաւաճ ձոխութեամբ բազմօրինակ յանցաւորք առ մեզ, և զԵպիդամնոս զմեր ստացուած՝ անտես արարեալ 'ի վիշտս վտանգին, 'ի փութալս մեր 'ի թիկունս օգնականութեան հասեալ ունին բռնաբար:

ԼԹ. «Արդարութեամբ, ասեն, կամեցեալ իրաւախոհ լինել նախ. և արդարև յայնժամ երևեսցի ոք պատկառ կալ արդարութեան, ոչ յորժամ բռնացեալ և ինքն յակատանի խնդիրս յուզեսցէ, այլ որ չև 'ի կռիւ հակառակութեան եկեալ, հաւասար բանից զգործ իւր յարմարեսցէ: Սոքա ոչ եթէ յառաջ քան զպաշարումն քաղաքին, այլ երբ 'ի միտ առին թէ չեմք ինչ լռելոց, գեղեցիկս ապա յայնժամ զանուն արդարութեան առին 'ի մէջ: Մեղապարտք արդէն ոչ այնու շատանան, այլ և ժպրհին ևս դիմել առ ձեզ այսօր՝ ոչ 'ի խնդիր դաշնակցութեան, այլ առ մեղսակիցս զձեզ ունելոյ և զօրօղս անիրաւութեան. և ընդ մեզ հակառակութեամբ գոլով՝ ընդունելութիւն 'ի ձէնջ գտանել: Որոց պարտ էր մանաւանդ յորժամ զգուշացեալ աներկևանք էին՝ յայնժամ գալ առ ձեզ, և ոչ

երբ առ մեզ անիրաւեալ' 'ի տագնապի վտանգին. և յորում անման ցայժմ դուք զօրութեան նոցա, և անկցորդք չարեաց ապիրատութեան, ձեռնտուութեամբ առ նոսա' հաւասար արժանաւորք 'ի լուր բողոքոյ և յանդիմանութեան մերոյ լինիջիք: Զի եթէ բաժանորդ էր ձեր լեալ երբեմն զօրութեան նոցա, իրաւամբ արդեօք և որոց պատի զհետ գան' հաւասարակից գտանէիք վնասուն, արդ ամենևին անման, մի և որոց յաջորդեն գործոց հասարակորդք լինիջիք:

Խ. «Եւ զի վայելչականօք և կարևոր հանդամանօք արդարութեան եկեալ եմք մեք առ ձեզ, և զի հակառակորդք մեր անիրաւք են և յափշտակողք' շատ իսկ ցուցաւ. գիտել արդ արժան է, եթէ չէ ուղիղ ընդունել զնոսա ձեզ 'ի դաշնակիցս: Զի եթէ 'ի պայմանս դաշանց' օրէն լինել ասացաւ քաղաքաց, որոց չիցէ մտեալ յարձանագիրս նիզակակցութեան, անցանել յարել յոր կողմն և հաճոյ իցէ նոցա, ոչ 'ի վնաս ընկերին եղան դաշինքս, այլ որոց ոչ 'ի բնիկ դաշնաւորէն իւրմէ օգտելով' զգուշութեան ունիցին պէտս և ոչ խոհական ընդունելեաց, փոխանակ խաղաղութեան' կռուոյ լինիցին առիթք: Որ եթէ անլսողք արդ բանից մերոց' 'ի սոյն վրիպանս անկանիցիք, ոչ միայն նոցա թիկունք, այլ և մեզ փոխանակ դաշնաւորի' թշնամիք և պատերազմողք լինիցիք. քանզի հարկաւ յունելն ձեր զնոցա կողմն, ոչ առանց ձեր 'ի կռիւ նոքա յարիցեն: Եւ որ իրաւացին է արդ, յերկոցունցս միանգամայն ձեռընթափ, ոչ յայս և ոչ յայն միտիցէք կողմն. իսկ եթէ այս ոչ, նոցին հակառակ ընդ մեզ միաբանել. զի ընդ Կորնթացիս է ձեր դաշն ուխտի, ընդ Կորկիւրացիս և ոչ դուլ զինուց: Մի' սովաւ օրինադիր հասարակաց լինիջիք' թիկնածու ապստամբաց երևել. զի և ոչ մեք 'ի վարանջութեան Սամոսացւոց 'ի ձէնջ, յերկպառակել Պելոպոնեացւոց' եթէ արժան իցէ ձեռն ապստամբութեան տալ, վճռեցաք ինչ ձեզ հակառակ. այլ աւելի իսկ ամենայն պնդութեամբ

ցուցայք, եթէ իրաւունք են իւրաքանչիւր պատուհասելոյ զիւր դաշնաւոր: Իսկ եթէ չարագործաց պաշտպանք և թիկունք իցէք, տեսջիք ընդ հուպ, զի և 'ի ձերոց ոչ սակաւք եկեալ յարիցեն 'ի մեզ. և այսպէս առեալ կարգէք օրէնս, քան մերումն՝ ձերոյին շահուդ հակառակ:

ԽԱ. «Այս են ահա իրաւունք մեր առ ձեզ, ըստ օրինաց Հելլենացւոց շատ իսկ բաւականք, և այս յորդոր մեր և աղերս 'ի խնդիր շնորհին: Զեմք թշնամիք, որով մեղանչել ձեզ կարիցեմք, և ոչ բարեկամք՝ որով զեղծանիցիմք. հաւասար 'ի ձէնջ փոխարէնս խնդրեմք: Յառաջ քան ըղպատերազմն Մարաց՝ պէտս ունելով ձեր երբեմն երկայն նաւաց ընդդէմ Եգինացւոց, նաւս քսան 'ի Կորնթացւոցս ընկալայք. երախտեօքս այսու և չթողլով մեր Պելոպոնէսացւոց ձեռն 'ի Սամոսացիս տալ, զօրացայք դուք նախ 'ի վերայ Եգինացւոց, և պատուհասակոծ արարէք ապա զՍամոսացիս. և այս յայնպիսի դէպս և յայնպիսի ժամանակի, յորում զհետ պնդեալ ոք թշնամւոյ՝ զամենայն ինչ 'ի մոռացօնս արկեալ այնմ միայն ուշ ունիցի զի յաղթութեան հասանիցէ. և զսատարս նմին, թէպէտ երբեմն թշնամիս, 'ի բարեկամս դնէ. և որ խոչընդոտն արգել լինիցի, թէպէտ և 'ի բարեկամաց համարի իցէ, ընդ ոխերիմ թշնամիս: Յորում և զընաւ իսկ զիւրուրոյն շահ յաչս դնէ, միայն եթէ 'ի կռուոյն յաղթող եղանել մարթասցէ:

ԽԲ. «Որոց միտ եդեալ, և մանկագունից 'ի ծերոց այտի ուսեալ՝ զհաւասարն մեզ կշռել հաճեսջիք. և մի խորհեսցի ոք արդարութեամբ զբանս ասացեալ, թէ այլ է պատերազմի շահ: Անդ է մեծագոյն շահ, ուր նուազ ոք մեղիցէ: Իսկ մօտաւոր պատերազմին կարծիք, որով երկեղուկըս ձեզ արկանելով Կորկիւրացիք անիրաւել յորդորեն, յաներեւոյթս է. չէ արժան ապա անյայտիւքն հրապուրեալ՝ 'ի յայտնի թշնամութիւն զԿորնթացիս մղել արկանել: Ուր բաղում զգօնութեան է մանաւանդ, զի որ ինչ յառաջնմէ անտի կարծիք չարեաց էին 'ի պատճառս Մե-

գարացւոց, զայն 'ի միջոյ 'ի բաց բառնալ. զի վերջինն շնորհ երախտաւորութեան 'ի դէպ ժամուն արբանեկեալ, թէպէտ և դուզնաքեայ՝ մարթի և զմեծագոյն իսկ մեղանս քաւել: Եւ մի՛ զի յոգնաթիւ գումարտակ նաւաց և մարտակցութիւն 'ի ծովու ձեզ մատուցանի՝ պատրեալ ձգիցիք զհետ նոցա. զի չանիրաւել ընկերին անխախուտ ևս է զօրութիւն, քան առ ժամն երևելեօք ոռնքացեալ՝ լի վըտանգօք առաւելաստացու գտանել:

ԽԳ. « Եւ զի 'ի գոյն դէպս կամք արդ, զոր երբեմն 'ի Լակեդեմոն ասացաք, իւրաքանչիւր զիւր դաշնաւոր պատուհասել. զնոյն այժմ և 'ի ձէնջ խնդրեմք, մի՛ մերովս վըճռով օգտեալ ձեր կանուխ, ձերովդ այսօր տայք մեզ վնասել: Զհաւասար փոխարինն հատուցէք մեզ, գիտելով չափ՝ զի յայնպիսի եմք պայմանի. յոր եթէ ոք ձեռնտու մեզ լիցի՝ ընդ կարևոր բարեկամս գրեսցի, և ընդ ոխերիմ թըշնամիս՝ եթէ խոչ ընդ ոտն արգել այնմ լինիցի: Մի՛ ապա զԿորկիւրացիս ընդ մեր հենգն 'ի դաշնակցութիւն ընդունիցիք, և մի՛ գործակից անիրաւութեան նոցա լինիցիք. և զայս այսպէս արարեալ՝ պատշաճից հպատակ կայցէք, և զլաւն և զօգտակարն անձանց ձերոց շահեսջիք »: Զայս այսպէս խօսեցան Կորնթացիք:

ԽԴ. Աթենացիք յետ լսելոյ և յերկոցունց իսկ կողմանց, երկիցս 'ի ժողով խմբեալ՝ յառաջնումն ոչ ինչ նուազ ընդունելի թուէին Կորնթացւոց բանք, այլ 'ի վերջնումն փոխեալ 'ի խորհրդոյ՝ սահմանեցին չառնել այնպիսի ինչ ուխտ դաշնաւորութեան ընդ Կորկիւրացիս, յորում հաւասար զնոյն բարեկամս և զնոյն թշնամիս գրել յիւրեանս. որով 'ի ստիպել զնոսա Կորկիւրացւոց խաղալ 'ի վերայ Կորնթեայ՝ լուծանէին այնու դաշինք խաղաղութեան ընդ Պելոպոնեսացիս. վասն որոյ բանս եդին փոխանակաւ ձեռն տալոյ միմեանց, եթէ ուրեք երբէք դէպ լիցի ելանել թշնամւոյ 'ի վերայ Կորկիւրայ կամ Աթենացւոց քաղաքին, և կամ 'ի վերայ միոյ ուրուք 'ի դաշնաւոր քաղաքաց

նոցուն։ Քանզի յայտնի երևէր նոցա, եթէ այլազգ չէր մարթ խորշել 'ի պատերազմէս ընդ Պելոպոնեսացիս. բայց և ոչ կամք էր նոցա զԿորկիւրա 'ի ձեռս Կորնթացւոց թողուլ, զինչխեցողն այնպիսի հզօր հանդիսի նաւաց. այլ ըստ կարի գրգռել զնոսա ընդ միմեանս և տկարացուցանել, զի 'ի ժամանակին յարիցեն 'ի վերայ Կորնթացւոց և այլոց ծովային զօրութեանց պատերազմաւ, և զի քաջաղէպ երևէր նոցա նիստ կղզւոյն 'ի ծովագնացս յանցս ճանապարհին յԻտալիա և 'ի Սիկիլիա։

ԽԵ. Այսու խորհրդով ընկալան Աթենացիք զԿորկիւրացիս. և յետ մեկնելոյ Կորնթացւոց՝ ոչինչ յամեալ արձակեցին նաւս տասն յօգնութիւն Կորկիւրայ, և 'ի զօրավար նոցին զԼակեդեմոնիոս որդի Կիմոնի, զԴիոտիմոս Ստրոմբիքեան և զՊրոտէաս Եպիկլեան. որոց պատուէր տուաւ մի՛ մխել 'ի նաւամարտ ընդ Կորնթացիս, այլ ջանալ խափանել զնոսա 'ի թափելոյ զօրս 'ի Կորկիւրա, կամ յայլ ուրեք 'ի ծովեզերեայս նոցին։ Զայս այսպէս խորհեցան առ զգուշանալոյ դաշանց. և հասին նաւք 'ի Կորկիւրա։

ԽԶ. Իբրև կազմեալ պատրաստեցան և Կորնթացիք, խաղացին հարիւր յիսուն նաւուք 'ի վերայ Կորկիւրայ. տասն նաւք յԵլէացւոց էին, երկոտասան 'ի Մեգարացւոց, տասն 'ի Լեւկադացւոց, քսան և եօթն յԱմպրակիացւոց և մի միայն յԱնակտորայ, և նոցուն ինքեանց Կորնթացւոց իննսուն նաւք։ Եւ զօրավար կարգեցան նաւատորմին մեն մի 'ի քաղաքաց դաշնաւորաց. և 'ի Կորնթացւոց՝ Քսենոկլիդէս որդի Եւթիկլեայ՝ հնգետորդ 'ի վերայ չորից իշխանակցաց իւրոց։ Չուեալ սոցա 'ի ցամաք երկիր հանդէպ Կորկիւրայ, առխթեալ զնաւսն 'ի Լեւկադեայ՝ մօտն 'ի Քիմերիոն, յերկիր Թեսպրոտեայ։ Նաւահանգիստ է առ՝ յորում կառուցեալ կայ քաղաքն Եփիւրէ, յԵլէատիս Թեսպրոտեայ, առ որով բերանացեալ թափի Ախերուսիա լիճ 'ի ծով. հոսելով և Ախերոն գետ ընդ երկիրն Թեսպրո-

տեայ՝ գայ խառնի 'ի լիճն, յորմէ և զանունն ընկալաւ: Անդ Թաւփի և Թիամիս գետ՝ անցեալ ընդ Թեսպրոտին և ընդ Կեստրինէ, որոյ 'ի միջի ամբառնայ սարն Քիմերիոն: Ելեալ աստանօր Կորնթացւոց 'ի ցամաք, և 'ի կողմն մի երկրին բանակ հարեալ նստան:

խէ. Իբրև լու եղև 'ի Կորկիւրա եթէ գայ մերձենայ Թշնամին, զինեցին և ինքեանք նաւս հարիւր տասն, որոց զօրավարք էր Միկիադէս, Եսիմիդէս և Եւրիբատոս. և եկին 'ի միում 'ի կղզեացն՝ որ կոչէր Սիւբոտա, և բանակեցան. անդր հասին և ատտիկեան տասունքն: Իսկ հետևակախումբն և հազար մի ասպարակիր զօրական 'ի Զակինթացւոց օգնական 'ի Լեւկիմնէ 'ի դարաւանդին մնային: Էին Կորնթացւոց մարտակից 'ի ցամաք երկրի ամբոխ բարբարոսաց, զի բնակիչք կողմանցս այսոցիկ բարեկամութեամբ էին միշտ ընդ նոսա:

խը. Իբրև ամենայն ինչ կազմ էր, առեալ Կորնթացւոց ընդ իւրեանս ռոճիկ եռօրեայ, չուեալ գիշերախառն 'ի Քիմերիոնէ եկին 'ի ծովամարտ: Եւ այն ինչ առաւօտն 'ի գիշերոյն կամէր մերկանալ, դէտակն 'ի վեր ամբարձեալ նոցա և տեսին զնաւախումբն Կորկիւրացւոց 'ի խորս՝ որ գայր և յառաջէր. և մօտ մատուցեալ 'ի տեսիլ, աստի և անտի կարգեալ ճակատեցան 'ի կռիւ: Յաջում թևի Կորկիւրացւոց կացին ատտիկեան նաւք. իսկ յահեկին ինքնին Կորկիւրացիք, յերիս գումարտակս զատուցեալք, յորս մէն մի 'ի զօրավարաց հրամայէին. այս էր կարգ ռազմին Կորկիւրացւոց: Իսկ զԿորնթացւոց զաջ թևն Մեգարացիք ունէին, Ամպրակիացիք զբունն, և այլք 'ի դաշնաւորաց՝ մի ըստ միոջէ. իսկ զձախն նոքին ինքեանք Կորնթացիք կազմէին ընտիր ընտիր նաւուք խմբելովք ընդդէմ Աթենացւոց, որք յաջում անդ Կորկիւրացւոց ճակատէին:

խթ. Իբրև աստի և անտի ամբարձան նշանք, խառնեցաւ նաւամարտն. և էին նոցա երկուստեք ամբոխ ասպարազէն 'ի վերայ նաւաց, և բազմութիւն աղեղնաւոր և

արդ՚ընկէց զօրուն, որք ըստ նախնի սովորութեան խառն 'ի խուռն կուտեալ 'ի խելս նաւաց՝ անփորձք ամենեքին։ Եւ եղև ծովամարտ խիստ, այլ ոչ ըստ ճարտարութեան արուեստին, որ զերկրախումբ մարտի յաւէտ բերէր զօրինակ։ Քանզի 'ի յարձակել բախել նոցա ընդ իրեարս, անհնարին լինէր այնուհետև՝ առ խռնելոյ բազմութեան նաւաց, քեցեալ բաժանել զնոսա. որոց 'ի զօրականն ապարակեր յուսացեալ, 'ի դադարել նաւացն անխաղացք՝ առաւել ևս խիզախելով 'ի վերայ յաղթութեան պնդապէս կռուէին։ Ոչ մի ինչ խոյանք կամ շրջան հնարիմաց անդանօր երևէր, այլ բարկադոյնս և արիադոյնս քան եթէ հըմտութեամբ նաւամարտիկ լինէին։ Մինչդեռ ամենայն ուրեք խռով էր և շփոթ աղմկի, ահա եհաս գումարտակն ատտիկեցի 'ի թիկունս Կորկիւրացւոց 'ի խուճապ տագնապի նոցա յահարկութիւն թշնամւոյն. բայց ոչ ձեռնամուխ լինելով 'ի կռիւ, զի զգուշանային զօրավարք կանուխ տուելոյ հրամանին Աթենացւոց։ Եւ առաւել վտանգէր աջ թև Կորնթացւոց, զորս 'ի փախուստ դարձուցեալ Կորկիւրացիք, և քսան նաւուք զհետ պնդեալ, ցիր և ցան հալածական ասանէին մինչև 'ի ցամաք երկիր. և հասեալ 'ի ճամբար և 'ի վրանս նոցա մարդաթափս՝ հրձիգ 'ի նոսա լինէին, և զգանձս նոցուն յաւարի առնուին։ Այսպէս 'ի տկարանալ Կորնթացւոց և դաշնաւորաց նոցուն՝ զօրանային Կորկիւրացիք յաղթութեամբ. այլ 'ի ձախուն՝ յորում համախումբ մարտնչէին Կորնթացիք, մեծապէս յաղթանակէին 'ի վերայ Կորկիւրացւոց՝ նուազելոց յօգնականութենէ քսան նաւաց հետամուտ զկնի թշնամւոյն։ Իբրև տեսին Աթենացիք զտագնապ նեղութեան Կորկիւրացւոց, եկին մերձեցան այնուհետև անպատրուակ 'ի թիկունս սոցա. 'ի սկզբան զգուշացեալ չառնել ինչ յարձակումն, բայց իբրև յայտնի լինէր պարտութիւն սոցա, և խրոխտումն Կորնթացւոց, 'ի հարկէն ապա սոսկեալ յանժամ եկին 'ի կռիւ և Աթենացիք և Կորնթացիք։

Ծ. Յետ պարտութեանն, անփոյթ Կորնթացիք ձգելոյ պարանաւ 'ի դուրս զզօրս նաւաց սուզելոց 'ի խորս[1], 'ի բազում շրջանս զհետ փախստէին լինէին՝ 'ի սատակել քան 'ի գերութիւն վարել զնոսա. և ոչ գիտելով զպարտութիւն աջոյ թևի իւրեանց, խառն ընդ թշնամիս և զբարեկամս կոտորէին յանգէտս: Եւ զի մեծ էր աստի և անտի նաւաց բազմութիւն և տարածեալ կալեալ զընդարձակութիւն ծովուն, 'ի խառնուրդս մարտին չէր դիւրին գիտել, ո՞ր կողմն էր որ յաղթէր, և ո՞ր կողմն յաղթեալ լինէր. զի մեծ էր ծովամարտս այս և երևելի՝ քան որ յառաջագոյն եղեալ էրբէք Հելլենաց ընդ Հելլէնս՝ յաճախութեամբ նաւաց գուպարելով:

Իբրև վանեալ հալածեցին զԿորկիւրացիս մինչև 'ի ցամաք երկիր, դարձ արարին անդրէն Կորնթացիք 'ի բեկորս և 'ի նշխարս նաւաց խորտակելոց և առ դիակունս անկելոց. և բազում ինչ յայնցանէ ժողովեալ ածին 'ի Սիւբոտա, ուր և հասեալ կայր յօգնականութիւն նոցա հետևակախումբ զօրն բարբարոսաց. և էր Սիւբոտա նաւահանգիստ ամայի յերկրին Թեսպրոտեայ: Զայս իբրև արարին, դարձեալ վերստին խմբեցան և առագաստ վերացուցեալ եկին 'ի վերայ Կորկիւրացւոց. որոց երկուցեալ թէ գուցէ թափեսցին թշնամիք 'ի կղզին, աճապարեալ մնացելովքն նաւուք և դեռ ևս պիտանեօք և ատտիկեցի գումարտակաւ ելին ընդ առաջ նոցա: Տարաժամեալ էր օրն, և այն ինչ սկիզբն լինէր արխական մարտահրաւէր երգոյն, ահա յանկարծ ընկրկեալ Կորնթացիք նահանջ հարին, զի տեսին զգումարտակ քսան նաւաց Աթենացւոց խաղալ 'ի վերայ՝ զորս 'ի վերայ առաջնոց տասանցն արձակեալ էր, խիթալով՝ որպէս և եղև իսկ, թէ գուցէ 'ի վտանգել Կորկիւրացւոց՝ չիցեն տասունքն բաւական 'ի պաշտպանութիւն:

[1] Հաւաստիք և նշանակ յաղթութեան էին բեկորովք նաւաց թշնամւոյն խորտակելոց կանգնել զախոյեան յաղթանակին:

ԾԱ. Տեսին զսոսա նաւս Կորնթացիք, և քան զոր էինն բազմաթիւ կարծելով՝ ընկրկեալ տեղի ետուն. իսկ Կորկիւրացիք ոչ նշմարելով զնաւսն՝ որ յաներևոյթս նոցուն յառաջէին, զարմանային ընդ ընկրկել գումարտակին Կորնթացւոց, մինչև տեսեալ ոմանց և ծանուցեալ զգալուստ ընկերացն՝ դարձան և ինքեանք յետս. զի երեկոյանայր օրն և զի հրաժարեալ մեկնեցան Կորնթացիք: Այսպէս զատուցան սոքա յիրերաց, և գիշերաւ վախճան լինէր ծովամարտին: Եւ մինչդեռ բանակ հարկանէին Կորկիւրացիք 'ի Լեւկիմնէ, քսան նաւք Աթենացւոց՝ որոց զօրավարքէին Գլաւկոն որդի Լէագրեայ և Անդոկիտէս Լէոգորեան, ոչ կարի յամելով յետ երևելոյն, անցեալ ընդ մէջ դիականց և նաւաց խորտակելոց՝ եկին հասին 'ի բանակս: Եւ Կորկիւրացիք՝ քանզի գիշեր էր՝ երկեան, 'ի թշնամեաց զնոսա կարծելով. բայց ապա գիտացեալ թէ ոյք իցեն, խարիսխ արկեալ հանգեան:

ԾԲ. Ի վաղիւն ելեալ ատտիկեան երեսուն նաւաց և որոց 'ի գումարտակէ Կորկիւրացւոց նաւելիք էին, խաղացին 'ի Սիւբատայ կոյս 'ի նաւահանգիստն, յորում նստէին Կորնթացիք, գիտել թէ իցէ՞ նոցա կամք 'ի կռիւ: Այլ նոցա ամբարձեալ 'ի ցամաքէն, և 'ի ծոցի անդ հանդրուանին յառազմ կարգեալ մնային, ոչ կամելով նախաձեռն լինել մարտին. քանզի տեսանէին զյաւելուածս հաստակառոյց նաւացն Աթենացւոց, և զիւրեանց բազում խոչ խափանարար. նախ այն՝ զի ամբոխի բազմութեան մարդագերւոյն՝ որոց 'ի նաւս, պահ զգուշութեան պէտք էին. երկրորդ՝ պակասութիւն կարևորաց 'ի հանդերձանս նաւաց յամայոջ անդ. վասն որոյ և նահանջել 'ի հայրենիս խորհէին, երկուցեալ մի՛ արդեօք լուծեալ զդաշինսն համարելով Աթենացւոց՝ փոխանակ զի ձեռն 'ի կռիւ խառնեցին, արգելուցուն զչու դարձի նոցա:

ԾԳ. Վասն այնորիկ բարւոք թուեցաւ նոցա ամբարձեալ զոմանս 'ի նաւ մի արընթաց արձակել առ Աթենա֊

ցիս առանց քարոզակի [1], լրտեսել գիտել զմիտս նոցա. որոց հասեալ օրինակ զայս զպատգամս ետուն. « Անիրաւէք արք Աթենացիք, զի նախաձեռն 'ի կռիւ և լուծիչ դաշանց լինիք, և մեզ արգել պատուհասակոծ զթշնամին առնելոյ: Զի եթէ կամք են ձեր խափանել զմեզ 'ի Կորկիւրա խաղալոյ կամ յայլուր՝ յոր խորհիմքս, և զդաշինս լուծանելոյ, 'ի թշնամիս ապա կալարուք զմեզ նախ, և իբրև ընդ այնպիսիս վարեցարուք »: Նոքա ըստ օրինակիս ըստ այսմիկ խօսեցան: Իսկ որք 'ի բանակին Կորկիւրացւոց լուան ըզբանն, զաղաղակ հարին, ձերբակալ զարսն առնել, և 'ի մահ տալ զնոսա: Այլ Աթենացիք արարին նոցա զայս պատասխանի. « Ոչ սկիզբն կռուոյս և ոչ լուծիչ դաշանց լինիմք, արք Պելոպոնեսացիք, այլ Կորկիւրացւոց դաշնաւորաց մերոց 'ի թիկունս գամք. զի եթէ այլ ուրեք դէմ եդեալ նաւարկել կամիք, ոչինչ արգել ձեզ լինիմք. իսկ եթէ 'ի վերայ Կորկիւրացւոց, կամ 'ի վերայ միոյ ուրուք 'ի տեղեաց նոցա, որչափ ինչ ձեռնհաս իցեմք, ոչ անտես արասցուք »:

ԾԴ. Եւ իբրև զայս այսպէս պատասխանի արարին Աթենացիք, պատրաստեցան յայնժամ Կորնթացիք 'ի դարձ, նշան յաղթութեան 'ի Սիւբոտա 'ի ցամաքին կանգնելով: Իսկ Կորկիւրացիք ժողովեալ զբեկորս նաւաց խորտակելոց և զդիականս անկելոց՝ 'ի հողմոյ շնչելոյ գիշերի և 'ի խաղացից ջուրց ցիր սփռեալս, և որպէս յաղթողս՝ ախոյեան ամբարձեալ և ինքեանք 'ի կղզւոջն Սիւբոտայ: Եւ պատճառք իւրաքանչիւր զյաղթութիւն ինքեան տալոյ. զի զօրացան Կորնթացիք 'ի ծովամարտիս զօրն ցերեկ, և ժողովեցին 'ի նաւաց խորտակելոց ոչ սակաւս և զդիականս անկելոց. և ոչ ինչ պակաս քան զհազար մի 'ի թշնամեաց գերեցին, ընկլմեալ և նաւս եօթանասուն, վասն որոյ և նշան յաղթութեան կանգնեալ: Իսկ Կորկիւրացիք, զի նաւս երեսուն 'ի թշնամեաց խորտակեցին, և յետ դա-

[1] Զի քարոզակ նշան էր և սկիզբն պատերազմի:

ըստեան Աթենացւոց ժողովեցին զբեկորս նաւաց և զդիակունս զծովեզերբ ծփեալս. և զի յերեկոյանալ աւուրն՝ ընդ տեսիլ նաւախմբին Աթենացւոց՝ ընկրկեալ տեղի ետուն Կորնթացիք, և զի 'ի խաղալ սոցա 'ի վերայ՝ չիշխեցին ելանել 'ի Սիւբոտայ. ահաւասիկ վասն ամենայնի այսոցիկ նշան յաղթութեան կանգնեցին և սոքա. և այսպէս ուրեմն կողմանք երկոքին կորզել յիւրերաց զյաղթութիւն կարծէին:

ԾԵ. Ի մեկնել Կորնթացւոց՝ յարձակեալ զՃանապարհայն կալան նենգաւ զԱնակտորիոն, զհասարակաց նոցա և զԿորկիւրացւոց հատուած 'ի մուտս անդ Ամպրակեան ծոցոյն. և իւրեանց անտի թողեալ բնակս՝ դարձան յերկիր իւրեանց: Եւ 'ի գերւոյն Կորկիւրացւոց՝ զութ հարիւրս 'ի սորկաց կարգէ 'ի վաճառ հանեալ, զերկերիւր յիսունս բազում խնամով՝ 'ի պահ կալան, զի 'ի դարձի նոցա 'ի Կորկիւրա՝ յիւրեանս զամբոխն շահեսցեն. քանզի բազումք 'ի նոցանէ 'ի ճոխից էին և 'ի գլխաւորաց քաղաքին: Այս օրինակ ճողոպրեալ ապրեցաւ Կորկիւրա յերեսաց զինուց Կորնթացւոց, և գումարտակն Աթենացւոց ելեալ մեկնեցաւ: Եւ այս եղև նախկին պատճառք Կորնթացւոց թշնամութեան ընդ Աթենացիս. փոխանակ զի 'ի ժամանակի դաշանց և խաղաղութեան՝ ձեռն 'ի Կորկիւրացիս ետուն 'ի ծովամարտին:

ԾԶ. Յետ այնորիկ ընդ հուպ և այսպիսի ինչ 'ի վեր երևեցաւ առիթ գժտութեան և պատերազմի 'ի մէջ Աթենացւոց և Պելոպոնեսացւոց. քանզի մինչդեռ պատեհի մրնայի զքէն վրէժուն 'ի նոցանէ հանելոյ, և Աթենացիք 'ի միտս կասկածոտս միշտ այնուհետև ընոցանէ, հրաման ետուն Պոտիդէացւոց բնակելոց 'ի վերայ պարանոցի Պալլենեայ իւրեանց հարկատու դաշնաւորաց՝ 'ի Կորնթեայ գաղթելոց, քանդել զպարիսպս քաղաքին և պատանդս տալ հաւատարմութեան. և 'ի Կորնթեայ առաքեալ զտարեւոր հոգաբարձու իշխան 'ի բաց արձակել, և մի այլ ևս

յայնմէ հետէ ընդունել զոք։ Քանզի կասկածէին թէ գուցէ 'ի գրգռութենէ Պերդիկկայ և Կորնթացւոց վտարանջեալ նոցա, և զայլս 'ի դաշնաւոր ժողովրդոց Վերին Թրակիոյ [1] զհետ օրինակին ձգիցեն։

ԾԷ. Յետ նաւամարտին Կորկիւրայ կազմեցան պատրաստեցան վաղվաղակի Աթենացիք 'ի վերայ Պոտիդեայ. որոց ոչ միայն յայտնապէս ոսոխ էին Կորնթացիք, այլ և արքայն Մակեդոնիոյ Պերդիկկաս որդի Աղեքսանդրի՝ նիզակակից երբեմն նոցա և բարեկամ՝ 'ի թշնամութիւն դառնայր 'ի պատճառս ձեռն տալոյ նոցա եղբօր իւրում Փիլիպպեայ և Դերդայ՝ որ սատան ընդդէմ իշխանութեան նորա յառնէին։ Երկուցեալ աստի Պերդիկկայ հրեշտակս փութանակի 'ի Լակեդեմոն առաքէր շարժել զՊելոպոնեսացիս ընդդէմ Աթենացւոց. և 'ի բանի առնէր զԿորնթացիս յապստամբութիւն Պոտիդեայ. բանագնաց լինէր և առ բնակիչս կողմանց Թրակիոյ, առ Քաղկիսացիս և առ Բոտտիացիս թօթափել զլուծ Աթենացւոց. յուսացեալ զի եթէ զնոսա զսահմանորդս իւր մարտակիցս ունիցի, ոչ սակաւ թեթևասցի ինքեան պատերազմն։

Իբրև զգաստ եղեն զիրացս Աթենացիք, փութացան զառաջս առնուլ վտարանջութեան քաղաքացն, արձակեցին նաւս երեսուն և հազար մի ասպարակիր զօրական ընդդէմ Թագաւորին, կացուցեալ 'ի գլուխ գումարտակին զԱրքեստրատ զորդի Լիկոմեդեայ տասամբք իշխանակցօք, և հրաման ետուն ծովակալ զօրավարացն պատանդս պահանջել 'ի Պոտիդեայ, քակել զամրութիւն քաղաքին, և հսանել 'ի վերայ մօտաւոր քաղաքաց առ չխլրտելոյ նոցա յապստամբութիւն։

ԾԸ. Զօքան Պոտիդէացիք հրեշտակութեամբ յԱթէնս աղաչել զերեսս նոցա մի ինչ նոր ընդդէմ իւրեանց մտաբերել.

[1] Զթուկիդիդեայ ἐπὶ Θρᾴκης Վերին Թրակիա եդի կամ՝ 'ի վերնակողմանս Թրակացւոց աշխարհին, համարելով իմանալ նովաւ զՔաղկիսեան քաղաքս։

գնացին 'ի նոցանէ և 'ի Լակեդեմոն ընդ դեսպանս Կորընթացւոց աղաչաւորս՝ 'ի պէտս կարօտութեան ձեռն օգնականութեան 'ի նոցանէ գտանելոյ: Եւ իբրև շատ իսկ աշխատ լեալ չկարացին ողոքել զԱթենացիս, և զի առ 'ի նոցանէ պատրաստեալ նաւախումբն 'ի վերայ Պերդիկկայ և 'ի վերայ Պոտիդեայ եղանէր 'ի ճանապարհ, և զի 'ի Լակեդեմոն խոստանայր աւագօրէարն ասպատակ յԱտտիկէ դնել՝ եթէ չարժեսցին Աթենացիք 'ի վերայ Պոտիդեայ, յայնժամ՝ ապա Պոտիդէացիք հասարակ հաւանութեամբ դաշնաւորեալ ընդ Քաղկիսացիս և ընդ Բոտտիացիս, նշկահեցին զԱթենացիս: Եւ հաւանեցուցանէր Պերդիկկաս ըզՔաղկիսացիս՝ թողեալ զծովեզերեայ քաղաքանին, գնալ ամրանալ յՈլիւնթոս. և խախտելոցն յերկրէն ետ արքայ 'ի սահմանս թագաւորութեան իւրոյ զմասն գաւառին Միկդոնիոյ՝ շուրջ զծովակաւն Բոլբեայ 'ի բնակութիւն՝ ցորչափ և տևէ պատերազմ՝ ընդ Աթենացիս: Եւ Քաղկիսացւոց զքաղաքս իւրեանց հիմն 'ի վեր յատակեալ, երթեալ բնակեցան 'ի միջերկրայս աշխարհին, և ձեռն արկին 'ի պատերազմ:

ԾԹ. Իսկ երեսուն նաւք Աթենացւոց հասին 'ի Թրակիա, գտին զՊոտիդէա և զայլ քաղաքս յապստամբութեան: Իբրև տեսին զօրավարքն Աթենացւոց եթէ անհնարին է պատրաստութեամբն այնուիկ մարտ ընդ Պերդիկկայ դնել և ընդ երկրին վտարանջելոյ, զերեսս հաստատեցին մնել 'ի Մակեդոնիա, յոր և սահմանեալն էին յառաջնըմէ, և սկիզբն արարին կռուոյն՝ ձեռն տալով Փիլիպպեայ և եղբարց Դերդայ՝ ոյք 'ի վերնագաւառաց անտի գային և անկանէին 'ի Մակեդոնիա:

Կ. Ի ժամանակին՝ յորում Պոտիդէա 'ի վտարանջութեան էր և խումբ նաւաց Աթենացւոց զափամբ գնային զՄակեդոնիւ, երկուցեալ Կորնթացւոց վասն քաղաքին այնորիկ, աճապարեցին զառաջս առնուլ վտանգին, զոր ինքեանց իսկ համարէին. և առաքեցին հազար և վեց հա-

րիւր ասպարակիր զօրական և չորեքհարիւր մեկնակազէնս, որ 'ի ժողովրդենէն ինքնակամ զինուորեցան, և որ 'ի քաղաքաց քաղաքաց Պելոպոնեսացւոց վարձկանեալք եկին։ Եւ զօրավարք նոցա Արիստեւս որդի Ադիմանտեայ, յորոյ 'ի շնորհս բարեկամութեան բազումք 'ի Կորնթացւոց մատդիւր զհետ զինուորութեանս գնացին՝ որում և մեծապէս փոյթ էր վասն Պոտիդէացւոց։ Եւ եկեալ ժամանեցին սոքա 'ի Թրակիա յետ աւուրց քառասնից վտարանջութեան Պոտիդէայ։

ԿԱ. Եւ գայր հասանէր վաղվաղակի գոյժ ապստամբութեան քաղաքացն յԱթէնս, և լուր ժամանելոյ զօրուն Արիստեայ. և արձակեցին նոքա ընդդէմ վտարանջելոցն երկու հազար ասպարազէնս և նաւս քառասուն, և զԿալլիաս Կալիադեան 'ի հինգերորդ զօրավար։ Հասեալ սոցա 'ի Մակեդոնիա, գտին անդ զառաջին հազարսն այն ինչ կալեալ զԹերմէ քաղաք, և պատնէշ պաշարմամբ նստեալ զՊիւդնեաւ. յաւելան և սոքա 'ի պաշարիչսն, այլ 'ի հարկէ իրացն ապա 'ի դաշն խաղաղութեան ընդ Պերդիկկայ եկեալ և 'ի նիզակակցութիւն բարեկամութեան. քանզի երբ Պոտիդէայ և գալուստ Արիստեայ 'ի սոյն զնոսա ստիպէր, ելին 'ի Մակեդոնիոյ։ Եւ ժամանեալ 'ի Պեռէա և անտի կրկին դարձ արարեալ 'ի Պիւդնա՝ փորձ փորձեցին առնուլ զայն[1] յարձակմամբ, և ոչ կարացեալ՝ չուեցին ընդ ցամաք 'ի վերայ Պոտիդէայ՝ երեք հազար ասպարաւորօք, թող զդունդս դաշնաւորաց և զվեցհարիւր հեծելադունդ մակեդոնացի ընդ Փիլիպպեայ և ընդ Պաւսանեայ, ընդ որս խաղայր և նաւախումբ եօթանասուն նաւաց, որք յամրադնաց ճանապարհաւ զաւուրս երիս հասին 'ի Գիգոնիա՝ յորում և բանակեալ նստան։

[1] Իրաւամբ արդեօք իմանալի էր զփորձ պատերազմին 'ի վերայ Պեռէայ, զի բարձեալ աթենացւոց զպաշարումն Պիւդնայ և դաշինս խաղաղութեան ընդ Պերդիկկայ եդեալ, 'ի չկալ նորա 'ի դաշինսն՝ խոտորեալ 'ի ճանապարհէն փորձ փորձեալ առնուլ զՊեռէա։

կբ. Պօտիդէացիք և ոյք ընդ Արիստեայ էին Պեղոպոնեսացիք, դէտակն կալեալ մնային Աթենացւոց մօտ յՈլիւնթոս՝ 'ի վերայ նեղցին բանակեալ, և հրապարակ ատենի ժողովոյ կարգեալ արտաքոյ քաղաքին. և ընտրեցին դաշնաւորք զԱրիստեւս 'ի զօրավար համօրէն հետևակազօրուն. իսկ հեծելախմբին զՊերդիկկաս, որ զայս երկրորդ անգամ 'ի բաց կացեալ յԱթենացւոց՝ 'ի կողմն Պօտիդէացւոց եղև, թողեալ զՅոլայոս փոխանակ իւր իշխան: Խորհուրդք էին Արիստեայ պինդ կալ զօրօք իւրովք 'ի վերայ կրճին և մտ դնել խլրտելոյ Աթենացւոց. զՔաղկիսացիս և զդաշնաւորս արտաքոյ կրճին թողուլ, և զերկերիւր այրուձի Պերդիկկայ յՈլիւնթոս, որպէսզի 'ի շարժել Աթենացւոց 'ի վերայ նոցա, հասեալ 'ի թիկանց փակել զնոսա երկուստեք 'ի մէջ: Իսկ Կալլիաս զօրավար Աթենացւոց իշխանակցօք իւրովք հանդերձ միակամ հաւանութեամբ՝ առեալ արձակեցին յՈլիւնթոս զվաշտ այրուձիոյն Մակեդոնացւոց, և ջոկատ մի 'ի զօրուէ դաշնաւորաց արգելուլ զնոսա չելանել 'ի թիկունս իւրեանցայոցն, և ինքեանք ամբարձեալ խաղացին 'ի վերայ Պօտիդեայ: Իբրև մօտ 'ի կիրճն եղեն և տեսին զթշնամին կազմ 'ի կռիւ, ճակատեցան և ինքեանք, և ընդ հուպ խառնեցաւ մարտն: Գունդն Արիստեայ և թեւն՝ յորում Կորնթացիք և ընտիրքն 'ի զօրուէն՝ խորտակեալ զհակառակորդսն և ձիգ զհետ պնդեալ հալածական տարան զնոսա, և մնացորդ զօրուն Պօտիդէացւոց և Պեղոպոնեսացւոց պարտեալք նկուն առաջի Աթենացւոց՝ թիկնադարձոյց փախստեայ 'ի քաղաքն անկան:

կգ. Դարձ արարեալ Արիստեայ 'ի հալածելոյ զփախստեայն, իբրև ետես 'ի պարտութիւն մատնեալ զմնացորդս զօրուն, կայր 'ի տարակուսի՝ զո՞ր կողմն ընտրել, յՈլիւնթոս եթէ 'ի Պօտիդէա դիմադրաւ անկանել. ապա խորհուրդ կալաւ համագունդ խմբեալ զիւրսն, 'ի փաղանգ մի հօծ և խիտ և զինու բռնութեան՝ անկանել 'ի Պօտիդէա: Եւ անցեալ ընդ ամբարտակ ծովուն 'ի նշաւակ նե-

տից հասելոց՝ զսակաւս յիւրոց թողեալ տապաստ, զբազումս զերծուցեալ ապրեցոյց։

Իսկ որ յՈլինթեայ նիզակակիցք էին Պոտիդէացւոց, քանզի վաթսուն միայն ասպարիսաւ 'ի բացեայ կայր քաղաքս՝ երևելի 'ի հեռուստ, 'ի տալ նշանին և 'ի խառնել մարտին՝ սկսան ոտն առ ոտն յառաջել յօգնականութիւն, որոց ընդդէմ կարգեցաւ վաշտ առնևձիոյ Մակեդոնացւոց արգելուլ զյառաջխաղացութիւն նոցա։ Այլ իբրև յաղթութիւնն 'ի կողմն Աթենացւոց եղև և նշանք խոնարհեցան, դարձան և սոքա վերստին 'ի քաղաքն, և վաշտն Մակեդոնացի առ Աթենացիս, ոչ միում և ոչ միւսոյ կողման ձեռն տալով 'ի կռիւ։

Յետ պատերազմին նշան յաղթութեան կանգնեցին Աթենացիք, և դաշամբք պայմանի թողին 'ի Պոտիդէացիս զմեռեալս նոցա։ Եւ անկան 'ի Պոտիդէացւոց և 'ի նիզակակցաց՝ արք իբրև երեք հարիւր. իսկ յԱթենացւոց յիսուն միայն և Կալլիաս զօրավար։

կդ. Եւ փութով պնդութեամբ ամբարձին Աթենացիք 'ի կողմանէ նեղցին պարիսպ պատնիշափակ ընդդէմ քաղաքին և պահանորդս 'ի նմա եդին. այլ կողմն Պալլենեայ ազատ անպատուար մնայր, քանզի չէր բաւական պահնակ գունդն 'ի նեղցին և զկողմն Պալլենեայ փակել պարսպաւ, գուցէ 'ի բաժանել զօրութեան՝ տկարասցին առաջի յարձակման Պոտիդէացւոց և դաշնաւորաց նոցին։ Բայց իբրև լուաւ ժողովուրդն յԱթէնս՝ եթէ անպարիսպ էր կողմն Պալլենեայ, առաքեցին անդէն գունդ մի ասպարաւորաց հազար վեցհարիւր մարտկաց, և 'ի զօրավար նոցա զՓորմիոն Ասովպեայ։ Հասեալ սորա 'ի Պալլենէ՝ և ընդ Ափիտիս եկն մերձեցաւ 'ի Պոտիդէա. զճանապարհայն հինահար առնէր զերկիրն, և չգտեալ իւր ընդդէմ խոչընդոտն, եկն և անարգել պաշարեաց և զկողմն Պալլենեայ. և այսպէս ընդ ծով և ընդ ցամաք փակեցաւ Պոտիդէա, զի ըզկողմն ծովուն կանխաւ կալեալ նաւէր նաւախումբն Աթենացւոց։

ԿԵ. Իբրև այսպէս պնդէր պաշարումն քաղաքին, և ոչ ուստեք էր նոցա յոյս փրկութեան, բայց եթէ 'ի Պելոպոննեսեայ և կամ յայլուստ յանակնկալ ինչ բաղդէ, խորհուրդ մի այսպիսի առաջի արկ նոցա Արիստեւս. զհինգհարիւր միայն թողեալ զարս 'ի պահ քաղաքին, այլոց ամենեցուն 'ի դիպել յաջողակ հողմոյ՝ ելեալ գնալ 'ի քաղաքէն ընդ ծով, զի բաւական իցէ ամրականացն պաշար, ընդ որս և ինքն խորհէր մնալ: Եւ իբրև չկարաց հաւանեցուցանել զնոսա 'ի սոյն յայս խորհուրդ, ջանայր այլով ճանապարհաւ հնարել մարթանս 'ի փրկութիւն քաղաքին: Եւ զանխուլ 'ի պահակերաց Աթենացւոց ել և փախեաւ 'ի քաղաքէն ընդ ծով. և առ Քաղկիսացիս գնացեալ 'ի բազում ուրեք արշաւէր զինուք, և դարանեալ թշնամեացն առ Սերմիլիոն քաղաքաւ՝ շատ զոք 'ի նոցանէ կոտորէր, և բանագնաց առ Պելոպոննեսացիս լինէր 'ի խնդիր օգնականութեան:

Իսկ Փորմիոն՝ յետ զքաղաքն պատնէշ պաշարմամբ փակելոյ, յարուցեալ իւրով հազար վեց հարիւր արամբք աւերէր զՔաղկիս և զԲոտտիա գաւառս, և առնոյր 'ի նոցանէ քանի մի քաղաքկնեար:

ԿԶ. Այս էին ահա 'ի մէջ Աթենացւոց և 'ի մէջ Պելոպոննեսացւոց կանուխ գրգռութեան պատճառք. բողոքէին Կորնթացիք, զի զՊոտիդէայ յիւրեանց անտի բնակեցուցեալ՝ և զարս Կորնթացիս և զՊելոպոննեսացիս պաշարեալ պահէին. իսկ Աթենացիք, եթէ զքաղաք հարկատու զիւրեանց դաշնաւոր՝ արարին Պելոպոննեսացիք վտարանջել, և եկեալ համարձակին եւս խառն ընդ Պոտիդէացիս մարտնչել ընդ նոսա: Սակայն դուլ զինուց էր դեռ եւս, չև լուծեալ ուխտի խաղաղութեան. և պատերազմն էր Կորնթացւոց միայն:

ԿԷ. Ի պաշարման Պոտիդէայ ոչ հանդարտէին Կորնթացիք թողուլ զքաղաքացիս իւրեանց պաշարեալս 'ի նմա. զի և վասն քաղաքին իսկ խիթային: Եւ շարժեցին ածին վաղվաղակի զդաշնաւորս 'ի Լակեդեմոն, բողոք կալեալ

ուժգին ընդդէմ Աթենացւոց, զի առ ոտն հարեալ նոցա
զդաշինս խաղաղութեան՝ ազատ համարձակ անիրաւէին
ընդդէմ Պելոպոնեսացւոց: Թէպէտ Եգինացիք առ ահի
Աթենացւոց ոչ խառնեցան ընդ դեսպանս յայտնապէս,
այլ 'ի ծածուկ ոչ դադարէին 'ի գրգռելոյ զպատերազմ.
զի և ոչ ըստ դաշանց միաբանութեան՝ վայելել, ասէին,
իւրաքանչիւր յինքնուրոյն վարչութեան: Իսկ Լակեդեմո-
նացիք հրաւիրմամբ կոչելով զդաշնակիցս, և խմբեալ զօրի-
նական զիւրեանց ժողով՝ հրաման ետուն նոցա ասել, որ
ինչ ոք ունիցի տրտունջ զանիրաւութենէ Աթենացւոց:
Յառաջ մատուցեալ ամենեցուն նոցա իւրաքանչիւր զիւր
բողոք, Մեգարացիք ընդ այլ բազմապատիկ պատճառս
թշնամութեան՝ յայտ առնէին և զայն, եթէ հակառակ
ուխտի դաշանց մերժեն զնոսա Աթենացիք 'ի նաւակայիցն
և 'ի ծովեզերեայց՝ որ ընդ իշխանութեամբ նոցա են, և 'ի
տօնավաճառաց Ատտիկեայ: Թողեալ Կորնթացւոց զայլս
'ի դաշնաւորաց նախամատոյց գրգռել զզայրոյթ Լակեդե-
մոնացւոց՝ ապա ուրեմն մատեան և ինքեանք 'ի խօսել յայս
ձև օրինակի:

ԿԸ. « Անդրժելի հաւատդ, ո՛ Լակեդեմոնացիք, 'ի
հասարակաց վարչութեան և յառանձին 'ի գնացս ձեր՝ ամե-
նևին իսկ անհաւատս գործէ զձեզ, եթէ ինչ մի հակառակ
զօտարաց առնուցումք խօսել. որով յարգարակորով զգօ-
նութեան առաւելեալ, բայց 'ի շատ ինչ իրս արտաքոյ 'ի ձէնջ
ամենևին անգէտ գտանիք: Զի բազում անգամ կանուխ
գուշակեալ մեր ձեզ զվնասուց չարեաց սպառնացելոց յե-
րեսաց Աթենացւոց, և չարարէք ինչ բնաւ ըստ խրատու
ազդեցութեանս, այլ զմէնջ մանաւանդ զխօսողացս 'ի միտս
եղէք կասկածոտս, որպէս եթէ առ անձնիւր շահուն զայն
կցկցիցեմք: Նմին իրի՝ ոչ յառաջ քան զտոյժս չարեաց,
այլ յետ արդեամբք փորձ 'ի նոսին գտանելոյ, յայնժամ
ապա զարթնուք կոչել զդաշնաւորս 'ի խորհուրդ, յորում
մեր են արդարև իրաւունք խօսելոյ՝ ունելով ծանր ծանր

պատճառս բողոքոյ, յԱթենացւոց թշնամանեալ և 'ի ձէնջ բարձի թողի լեալ անխնամ: Զի եթէ զանխլաբար յանկեան ուրեք հարստահարեալ էր նոցա զՅելլադա, արժան էր արդեօք անգիտակացդ ազդ առնել զայդ. այլ զի՞նչ պէտք այսօր երկարաձիգ ճառից, յորժամ զկէսս 'ի ծառայութիւն ընկճեալ տեսանէք, զայլս դարանակալ նենգութեան նոցա որսս, ոչինչ խնայելով և 'ի մեր դաշնաւորս՝ որք և 'ի բազմաց հետէ 'ի կարծիս երկիւղի խիթան յերեսաց նոցա. որ եթէ չէր այս այսպէս, ոչ արդեօք զԿորկիւրա կալեալ յանկարծ 'ի մեր հենգն, և ոչ զՊոտիդէա պաշարէին. զի վերջինս 'ի պատկանաւոր յոյժ տեղւոջ ունի զիւր նիստ 'ի կըցորդութիւն Թրակիոյ, և առաջինն՝ զի սատարէ Պելոպոնեսացւոց 'ի զօրութիւն մեծ նաւական:

կթ. «Եւ այսոցիկ ամենեցուն դուք էք պատճառք. զի յետ Մարական պատերազմին թողէք նոցա պարսպել զքաղաքն, կառուցանել և զերկար պատուարն, ոյք և անդուլ անդադար ցայսօր՝ ոչ 'ի հպատակ ժողովրդոց իւրեանց միայն, այլ և 'ի դաշնաւորաց ձերոց բառնան զազատութիւն. զի ոչ եթէ որ ծառայեցուցանել կամին, այլ որ կարողքն գոլով արգելուլ զայն՝ և անտես առնեն, նոքա են ըստոյգ պատճառք գործոյն. և մանաւանդ ոյք զազատարարաց Ելլադայ արժանապէս կրեն զանուն մեծաշուք: Հազիւ ուրեմն այսօր արդ 'ի ժողով գումարիմք. և այն իբրու ոչ զյայտնեայ ինչ իրաց, զորոց յորժամ չէին մեզ պէտք 'ի քնին նստելոյ՝ թէ եւ արդեօք զրկեցիմք, այլ թէ որո՞վ իւիք զզրկանաց նոցա վրէժս պահանջիցեմք: Նոքա ժիրաժիրք 'ի խորհուրդս և 'ի գործ՝ արձակ արձակ խաղան 'ի վերայ որոց յերերի տատանեալ դեդևին դեռ ևս: Զեմք ինչ անտեղեակ՝ որո՞վ ճանապարհաւ Աթենացիք, զխորդտոն առ ոտն յառաջէն ընդդէմ դրացեաց իւրեանց: Ցորչափ առ թմբիր անզգայութեան ձերոյ զանխուլ 'ի ձէնջ համարեալ՝ այնչափ ինչ համարձակին, զի՞նչ՝ եթէ 'ի միտ առնուցուն միանգամ, եթէ տեսեալ և չտեսանելոյն առնէք, ո՞ր-

պէս յանդգնագոյնս յայնժամ աներկեայ խաղասցեն 'ի վերայ։ Դուք միայն 'ի Հելլենացիս հանդարտեալ լուէք, ո՛ Լակեդեմոնացիք, և քան զինու զօրութեամբ՝ յամելով կամիք վանել զթշնամին. դուք միայն ոչ 'ի սկիզբն զօրութեան թշնամւոյն, այլ յաճելն 'ի բազմապատիկ առաւելութիւն՝ յառնէք 'ի կործանումն նորին։ Թէպէտ և զգոյշ քաջողիք, այլ քանի՛ այլազգ յարդեանց անտի ճշմարտութեան զիրն տեսանեմք։ Ի ծագաց երկրի հասեալ Մարն 'ի Պելոպոնես լուաք՝ մինչև ձեր պատրաստեալ արժանապէս 'ի դիմի հարկանել նմին. և այսօր իսկ իբրև զնա չեն հեռի Աթենացիքդ, զորս առ դուռս տեսեալ և զանց առնէք. և փոխանակ կանխելոյ ելանելոյ 'ի վերայ, մնայք ընդ զօրացելոյն 'ի կռիւ ելանել. և երկբայական բաղդին՝ թողուք վանել զնոցա յարձակումն։ Գիտելով զի բարբարոսն իւրով ձախողութեամբ բազում անգամ, որպէս և Աթենացիքն իւրեանց վրիպակաւ՝ քան ձերովդ օժանդակութեամբ, յաղթեալք 'ի մենջ պարտեցան. որպէս և բազմաց մեծայոյս ակնկալութիւն առ ձեզ ցայժմ յանպատրաստից ըմբռնեալ կորոյս զնոսա։ Եւ մի՛ ոք 'ի ձէնջ առ ատելութեան քան առ նախանձու սիրոյ զբանս յանդիմանութեան ընկալցի. զի բողոք յանդիմանութեան առ բարեկամս է մեղուցեալս, իսկ բողոք ամբաստանութեան՝ առ թշնամիս հարստահարիչս։

Հ. « Եւ զի առաւել քան զայլս զամենեսին իրաւունս համարիմք մեք մեզէն յանդիմանիչ ընկերին լինելոյ, մանաւանդ յորում զկարևոր շահու է խնդիրս. զորոց թուի եթէ չզգայք դուք զծանրութիւն, և չէ ձեր ընդ միտ անգամ անցեալ՝ թէ ընդ Աթենացիս է մրցումն, և թէ որպիսի՛ խտիր է ընդ նոսա և ընդ ձեզ։ Նոքա նորաձևութեանց սիրողք միշտ, զոր օրինակ հանճարեղք 'ի գիւտս հնարից, նոյն և արագ 'ի գլուխ հանելոյ զնոսին։ Իսկ դուք՝ զոր ունիքդ գիտէք միայն պահել, և ոչ 'ի մի ինչ նոր ձեռներէցք, և 'ի կարևորս ապաժամանք։ Նոքա քան ըզ-

կար իւրեանց յանդգունք, և քան զկարծիս դիմագրաւք 'ի վտանգս, և յանհնարինս մեծայոյզս. ուր ձեռք բաժին է խոնարհ քան զչափ զօրութեանդ ձեռնարկու 'ի գործ լինել. յաներկեւանս անգամ անվտանգք, և հանապազ կասկածոտք յերեսաց յաղխտից վշտաց: Նոքա առ ձեռովդ դանդաղութեամբ ժիրք և անխոնջք, և 'ի տարաշխարհիկ օտարութիւն յօժարք. որչափ դուք յարեալք 'ի բնիկ երկիր ձեր և 'ի ժողովուրդ: Նոքա 'ի տարագնաց ուղևորութեան շահել համարեն. իսկ դուք հեռանալովդ 'ի հայրենի երկրէդ՝ և զոր առ ձեռն ունիք խիթայք կորուսանել: Նոքա ի՛ յաղթութեան՝ խիզախագոյն ևս յառաջ մղին. 'ի պարտութեան դուն ուրեք 'ի կոր կործանին. գնեն զանձինս 'ի վերայ հասարակաց պետութեան, որպէս եթէ օտարին էր այն մարմին. և զմիտս մինչև 'ի վերջին ձիգն յօգուտ նորին վարեն: Զվրիպելն 'ի գիտեալ խորհրդոց՝ անկանել 'ի սեպհական բարւոյն հաշուեն. զյաջողուածս զինուց իբրու դուզնաքեայ ինչ առ որովք ըղձանն շահատակութեամբ ժամանել: Եթէ ուրեք երբեք 'ի փորձ հանդիսին ձախողին, յայլ ինչ նոր ձեռնարկ յուսով փոխանակեալ՝ զպէտս կարօտոյն ջանան լնուլ նովաւ: Նոքա միայն 'ի ստանալն և ձկտին զհետ ակնկալելեաց. և գիտեն արագապէս յարդիւնս ածել զսահմանեալ իւրեանց խորհուրդս: Ընդ բովանդակ իսկ կեանս՝ ընդ քիրտն և ընդ վտանգս զհետ սոցին պնդին, և առ առաւելաստացութեան յոր առ ձեռն ունին՝ սակաւս վայելեն: Ոչ մի օր տօնական կամ պարապոյ ճանաչեն նոքա 'ի լրումն անդ պարտուց, և ոչ փոքր զեան զհանդարտութիւն անգործ քան զբազմավաստակ պարապութիւն գնեն. մինչ զի եթէ ոք 'ի կարճոյ ասէր զնոցանէ՝ ծնեալս զնոսա ոչ անձանց և ոչ ընկերին տալ հանգիստ, յոյժ ճշմարտութեամբ արդեօք ասէր:

ՀԱ. «Զայս ուրեմն և զայսպիսի ժողովուրդ նախանձ ընդդէմ ձեզ ունելով, ո՛ Լակեդեմոնացիք, և տակաւին յուլացեալ դանդաղիք: Եւ համարիք եթէ չիցէ խաղաղութիւն

տեղական վասն որոց Թէպէտ երաւամբ գայցեն 'ի պատրաստութիւն մարտի, Թէպէտ խորհրդով չտալոյ վայրապար տեղի անիրաւութեան: Եւ հաւասարգրէք չածելն վիշտս ընկերին, և զգոյշ լինել չկրելոյ զնոյն զայդ 'ի նմանէ. մարթ էր ձեզ արդեօք 'ի սոյն ժամանել նպատակ, եթէ ձեզ նմանեաց դրացեաց վիճակէիք: Բայց որպէս ցարդ ցուցաք ձերդ այդ գնացք հնաւանդ է և յոյժ վաղեմական առ նոցայովս: Եւ 'ի հարկէ իսկ. զոր օրինակ յարուեստս՝ որ նորագիւտն էր զօրացեալ ունի. քաղաքի հանդարտելոյ ընտրելագոյն են անշարժ օրէնք, այլ որոց ստիպեալ են զբաղմաց խորհրդոց նկրտել զկնի, նոցա և բազում հնարից և խորագիտութեանց պէտք են. որով և Աթենացւոց օրէնք վարչութեան՝ 'ի բազմապատիկ հանդիսից փորձոյ, նորոգեալ փոփոխեցան:

Այժմէն իսկ վախճան տուք ձերումդ յապաղկոտ խորհրդոց, և որպէս խոստացայքդ՝ փութացարուք ընդ այլոց և Պոտիդէացւոց ժամանել 'ի Թիկունս. վաղվաղեցէք զարշաւանդ յԱտտիկէ, զի մի զբարեկամս և զտոհմայինս ոխերիմ Թշնամեացն մատնիցէք, և զմեզ առ անյուսութեան յօտարին նիզակակցութիւն դիմել ստիպիցէք. որով ոչինչ մեղանչեմք՝ ոչ ընդդէմ դից վրիժառուաց երդմնահարից, և ոչ մարդկան՝ որ միտս ունիցին: Զի ոչ եԹէ որ յանօգնական կարօտութեան առ այլս դիմեսցեն, դրժողք դաշանց գտանիցին. այլ որ յերդմնի խոստման չտայցեն ձեռն ընկերին: Զի եԹէ յառաջամիտք առ մեզ լինիցիք՝ կացցուք մնասցուք առ ձեզ. զի 'ի փոփոխելս զդաշնաւորս ոչ անարատ մտօք ինչ գործիցեմք, և ոչ զնորս մտերմագոյնս գտցուք. խորհեցարուք քաջ, և փոյԹ կալարուք միայդ նուաստութիւն խոնարհեցուցանել զՊելոպոնես քան զոր հարքըն ձեր աւանդեցին ձեզ»:

ՀԲ. Զայսոսիկ Կորնթացիք խօսեցան: Եւ զի դէպ եղև Աթենացւոց վասն այլոյ իրիք խնդրոյ դեսպանութեամբ յառաջագոյն 'ի Լակեդեմոն գալ, իբրև լուան զժողովոյ և

զխօսից՝ արժան Թուեցաւ գալ երևել նոցա և յատենի Ղա֊
կեդեմոնացւոց, ոչ 'ի պատասխանատուութիւն ամբաստա֊
նութեանց քաղաքաց զնոցանէ, այլ 'ի խելամտութիւն թէ
չէ պարտ վաղվաղկոտ 'ի խորհուրդս լինել և յորոշումն,
բայց եթէ զգոյշ պարապով քննութեան: Դարձեալ հան֊
դէս իմն առնել կամեցան հզօր զօրութեան պետութեան
իւրեանց. յուշ առնելով ծերոց զորոց գիտակն էին, և ծա֊
նօթս տալով մանկտւոյն՝ զորոց չէին տեղեակ. յուսալով
սովաւ 'ի խաղաղութիւն զՂակեդեմոնացիս յորդորել և
տալ խորշել 'ի պատերազմէն: Մատուցեալ նոցա ասել առ
Ղակեդեմոնացիս աղդ արարին, եթէ չիցէ ինչ արգել՝ կամ
է նոցա խօսել ինչ յատենի. և յորժամ հրաման եղև ա֊
րանցն յանդիման լինելոյ, մատուցեալ նոքա խօսեցան
այսպէս:

Հգ. « Թէպէտ հրեշտակութիւնս մեր այս ոչ 'ի հա֊
կառակաբանել դաշնաւորաց ձերոց էր, այլ յայլ ինչ պէտս
առաքեալ, բայց զի լսեմք արդ զտրտունջ բողոքոյ նոցա
զմէնջ, գամք ոչ եթէ 'ի պատասխանատուութիւն ընդդէմ
ամբաստանութեանց նոցին. և ոչ իբրու առաջի դատաւո֊
րաց ոչ մեր և ոչ նոցա կարգեմք մեզ զբանս մեր, այլ զի մի
կարի իմն դիւրահաւատ առ դաշնաւորս ձեր գտեալ՝ թե֊
թևութեամբ զկարևորաց և զծանուանց չարաչար ինչ սահ֊
մանիցէք: Դարձեալ, կամք են մեր յայտ առնել ձեզ վասն
բողոքոյ եղելոյ ընդդէմ մեր, թէ ոչ յանիրաւի ինչ ունիմք
զոր ունիմքս, և թէ քաղաքս մեր բազում մտադրութեան
և մեծարանաց է արժանաւոր:

« Եւ զի՞ մեզ զվաղնջուց իրաց բանս արկեալ Ճառել,
զորոց յականջալուրս վկայս ունիցիմք մեք զունկնդիրսն և
ոչ ականատեսս: Իսկ զՄարական պատերազմէն՝ զորմէ ոչ
ինչ պակաս գիտակ էք և դուք, զոր թէպէտ տաղտուկ է
ստէպ յեղյեղել. սակայն հարկ է ասել ինչ: Զոր միանգամ
արարաքս յայնժամ եդեալ զանձինս մեր 'ի վերայ հասա֊
րակաց փրկութեան, որում և դուք վաստակակից մեզ
գտայք. մի արդ 'ի համբաւոյ գովութեան՝ եթէ շահաւէտ

ինչ ունիցի, իսպառ զրկեսցուք: Վախճան խօսիցս ոչ ՚ի ջատագովութիւն ինչ մեր է, այլ ՚ի վկայութիւն յանդիմանութեան, թէ ընդդէմ որպիսի՛ քաղաքի պատերազմածել կամիցիք: Զի ՚ի Մարաթոն միայնակ ընդդէմ բարբարոսին դիմադրաւ գտաք, ասեմք. և յորժամ երկրորդ անգամ գայր նա ՚ի վերայ մեր, մեզէն անբաւականք հանդիպելոյ նմա պատերազմաւ ՚ի ցամաքի, ամբարձեալ ազգովին ՚ի նաւս՝ ծովամարտ ՚ի Սալամինա մղեցաք. որով և արգելաւ նա չմխելոյ ՚ի Պելոպոնէս՝ յապականութիւն և յաւեր քաղաքացն, որոց չէր զօրութիւն ընդդէմ մեծի նաւախմբին ձեռն իրերաց տալոյ: Որում և ինքնին բարբարոսն վկայեաց. զի պարտեալ ՚ի նաւամարտին՝ չունելով այլ ևս զնոյն զօրութիւն, շտապ տագնապաւ ընդ մեծի մասին զօրուն աճապարեալ մեկնեցաւ:

ՀԳ. «Ի լինել այսմ այսպէս և յերևելն յայտնապէս՝ եթէ փրկութիւն Ելլադայ ՚ի նաւս իւր է, երրեակ ինչ կարևոր առեալ մատուցաք աշխարհիս մերում յայնժամ. նաւախումբ հզօր, զայր հանճարեղ ՚ի զօրավար և յառաջամիտ յօժարութիւն ժիրաժիր: Զի ՚ի չորեքհարիւրոց անտի նաւաց գումարտակիս՝ ոչինչ նուազ քան կիսովչափ ՚ի մէնջ մատուցաք, և զԹեմիստոկլէս իշխան զօրուն՝ որ առաջին պատճառ եկաց նաւակռուոյն ՚ի մուտս անդ նեղցին, որ և յայտնապէս ՚ի գլուխ տարաւ զմեծ զայն փրկութիւն. որոյ վասն փառաւորեցէք դուք զնա առաւել քան զայր օտար եկաւոր առ ձեզ: Իսկ զժիրաժիր յառաջամտութիւնս կարի իսկ համարձակութեամբ ցուցաք. զի յորժամ չէր որ ձեռն տայր մեզ ՚ի ցամաքի, յորժամ այլոց ամենեցուն մինչև ՚ի սահմանս մեր ընկճեալ էր ՚ի ծառայութիւն, քաջիկ խորհրդով ընտրեցաք մեք մեզէն թողուլ ըզքաղաք մեր և զբնակութիւն յաւէր. և փոխանակ վայրավատեալք անպիտան միաբանութեան դաշնաւորաց լինելոյ, ելեալ ՚ի նաւս խրախուսեալ դիմեցաք ՚ի վտանգս. ոչինչ դժգմնեալ՝ զի ոչ կանխեցէք դուք մեզ ՚ի զօրաւիգն օգնա-

կանութեան։ Որպէս զի ոչինչ նուազ ձեզ օգտակար գտայք քան մեք մեզէն. զի դուք 'ի քաղաքս ձեր բնակելով՝ առ երկարելոյ 'ի նոյն վայելս, 'ի խէթս երկիւղին միայն 'ի վերայ հասելոյ՝ վասն ձեր առաւել քան վասն մեր, եկայք մեզ 'ի թիկունս. գոնեա ցորչափ յոտին կայր քաղաքս՝ չխլըրտեցայք բնաւ։ Իսկ մեր թողեալ զայն՝ որ այլ ևս չէր 'ի միջի, և յորոյ վերայ չէաք ինչ մեծայոյս՝ նահատակեալ ապրեցուցաք զձեզ 'ի մասնէ, և զմեզ ինքնին գլխովին։ Զի եթէ կանխէաք անձնատուր 'ի Մարն լինել, երկուցեալ որպէս զայլս վասն գաւառիս, և չհամարձակէաք ելանել 'ի նաւս՝ իբրու 'ի սպառսպուռ ջախջախեալս, չէր ձեզ այնուհետև՝ չունելով նաւս բաւական՝ 'ի ծովամարտ յանդգնել, և յաջողէին յայնժամ անաշխատ կամք բարբարոսին։

ՀԵ. «Արժանի եմք ապա, ո՜ Լակեդեմոնացիք, վասն այնր ժամանակի յառաջամիտ փութոյս և վասն հանճարեղ խորհրդոյն՝ մի այդչափ նախանձու ատելութեան Հելլենաց նշաւակ զմեզ կացուցանել, փոխանակ զի իշխեմք նոցա։ Զի ոչ եթէ բռնաբար ինչ կալաք մեք մեզէն զայս իշխանութիւն, այլ 'ի հրաժարելդ ձեր երկարել զպատերազմն ընդ բարբարոսին ցվախճան, և 'ի դիմել դաշնաւորաց առ մեզ և յաղաչել զի իշխան առաջնորդ կացցուք նոցա։ Եւ այսպէս յընթացից այտի գործոյն ստիպեալ նախ, յայս պայման զտիրապետութիւնս հասուցաք. առաւել առ երկիւղի 'ի սկզբան, ապա առ պատուոյ և 'ի վախճանի ուրեմն առ շահու օգտին։ Ոչ ևս այնուհետև աներկևան թուէր մեզ, 'ի թշնամանեալ բազմաց և 'ի խլրտել ոմանց և 'ի կրկին նուաճութեան, և ձեր ուծանալով 'ի մէնջ և յերկմիտս և 'ի գժտութեան՝ ձեռնթափ 'ի գործոյս լինել, զի սարտուցեալ յայնժամ 'ի մէնջ և գնացեալ 'ի ձեզ յարէին. զի ամենեցուն ներեալ է 'ի մեծագոյն վտանգին՝ ապահովել անպարսաւ զանցնիւր շահ օգտի։

ՀԶ. «Ո՞չ և դուք, Լակեդեմոնացիք, զքաղաքս Պելոպոնեսեայ ըստ ձերումդ շահու օրինադրեալ վարէք, որ ե-

թէ անդստին 'ի սկզբանէ իբրև զմեզ պինդ կացեալ է ձեր յիշխանութեան առաջնորդութեանդ, գիտեմք քաջ, զի ոչինչ պակաս քան զմեզ տաղտկալի լեալ էր ձեր դաշնաւորաց, և բռնադատէիք խստիւ զիշխանութիւնդ վարել, և ոչ վայրապար 'ի վտանգս զձեզ պարփակել: Եւ այսպէս ոչ զարմանալոյ ինչ գործ գործեմք, և ոչ 'ի մարդկեղէն օրինակէն օտար, եթէ զյանձնեալն մեզ զիշխանութիւն ընկալեալ, և 'ի վեհագունից յաղթեալ 'ի պատճառաց, յերկեղէ` 'ի պատուոյ և յօգտակարութենէ, չթողումք արդ զայն 'ի բաց: Դարձեալ չեմք ինչ մեք նախկին հեղինակ իրիս, այլ անդստին գլխովին անխախուտ սահմանեալ օրէնք, տկարին ընդ հզօրագունիւ անկեալ նուաճիլ: Արժանաւորս զմեզ հաւատացաք, որպէս և դուք ինքնին 'ի նոյն միտս էիք զմէնջ ցայսօր, յորում արդ զօգուտն ձեր խորհելով` վեր 'ի վայր առնուք յեղյեղել զարդարութեան անուն: Ոչ ոք 'ի դիպել պատեհի կորզելոյ ինչ մի, առ զգուշանալոյ յաւելաստացութենէ յետս կասեցաւ: Գովութեան են արդարև արժանաւորք, որք զմարդկայնոյ բնութեան զհետ գնալով` իշխելոյ ընկերին, 'ի վեր քան զզօրութիւն իշխանութեան արդարակորով գտանիցին: Զի եթէ այլք փոխանակ մեր էին, որպէս հաւանեալս եմք, օրինակաւ հաւաստէին արդեօք զի կարի չափով գնամք մեք: Այլ 'ի հեզութենէս` անփառունակութիւն յաւէտ քան գովութիւն յանձինս մեր յանիրաւի ձգեցաք:

ՀԷ. « Եւ զի զիջեալ տեղի տամք դաշնաւորաց մերոց 'ի խնդիրս դատից, և հաւասար օրինօք հատուցանեմք նոցա զիրաւունս, յաղթասէրս և բռունս թուիմք լինել: Եւ չդնէ ոք միտ` թէ առ ի՞նչ որ այլուր իշխանութիւն ունիցին, և նուազ քան զմեզ ցածութեամբ ընդ հպատակեալս գնայցեն, ոչ ընդ նովին պարսաւանօք անկանին. զի որոց զօրութիւն է բռնանալոյ, չունին պէտս արդարութեան և իրաւանց. իսկ որ սովորեալք են գնալոյ ընդ մեզ հաւասար օրինօք, եթէ պակասէ ինչ մի նոցա արտաքոյ կարծեաց

ակնկալութեան, թէպէտ խորհրդով՝ թէպէտ 'ի կարգէ իշխանութեան սահմանելոյ, փոխանակ շնորհ ունելոյ վասն չափ իսկ ոչ զրկելոյն, ընդ զրկանան առաւել դժկամակին, քան եթէ յառաջնմէ անտի արհամարհեալ զօրէնս՝ և յայտնապէս հարստահարեալք զնոսա. և ոչ ոք իշխէր յայնժամ ձիկ հանել՝ որպէս եթէ չէր պարտ տկարին տեղի տալ հըզօրագունին: Ընդ անիրաւութիւն առաւել, որպէս թուի, զայրանան մարդիկ քան ընդ բռնակալութիւն. զի որ 'ի հաւասարէն բռնաբարութիւն իրաւանց համարի, 'ի հզօրագունէ՝ բռնութիւն հարկին: Ընդ տէրութեամբ Մարաց սաստիկ քան զայս կրելով՝ տանէին լռիկ, որոց արդ անհանդուրժելի երևի մերս տիրապետութիւն. և յիրաւի. զի առժամայնքն ծանրանան՝ որոց 'ի հպատակութեան կայցեն: Զի եթէ լուծեալ ձեր զմերս իշխանութիւն՝ ընդ այնր զձերդ փոխանակիցէք, զմտերմութիւն սիրոյս՝ զոր առ մերովս ահարկութեամբ ստացայք, աներկբայ անդէն յերկիւղ փոխէք. և զոր երբեմն առ ժամանակ մի յառաջնորդութեան ձերում ընդդէմ Մարաց ցուցէք, զնոյն արդեօք և այսօր երևեցուցանիցէք: Օրէնս ունիք ձեզ սեփականս՝ անհաղորդս այլոց ժողովրդոց, որով ոչ ոք 'ի ձէնջ արտաքոյ հայրենեաց, ոչ ձերովդ և ոչ Հելլենաց օրինօք վարի:

ՀԸ. « Խորհեցարուք արդ պարապով, զի ոչ զսակաւժամանակեայ դուզնաքեից իրաց է խնդիրս, մի՛ օտարին խորհըրդոյ և բողոքոյն հաւանեալ, զտագնապ տարակուսիդ աձեցուցանիցէք: Եւ թէ քանի՜ կեղակարծ և շըջըջուն է զինուց բաղդ, չև 'ի նոյն ձեռն արկեալ խորհեցարուք քաջ, որ սովոր է յամելոյն յաճախ բազմայեղանակ դէպս ծնանել. յորոց հաւասար հեռի դոլով ձեր և մեր, ա՛ւ մեծայ վտանգն՝ յանստուգութեան կամք: Զեռնամուխ միանգամ մարդիկ 'ի կռիւ, անտի սկիզբն առնուն՝ յոր վախճան տալ պիտէր. և 'ի ձախողելն՝ 'ի խորհել գան և 'ի խելամտութիւն: Աչաւ այժմ յայսպիսեաց սատի վրիպակաց, յոյժ

'ի բացեայ և դուք, խորհուրդ տամք ձեզ՝ մինչդեռ հաւասար յընտրութեանս մերում է, մի՛ լուծանել զդաշինս և մի՛ զերդմամբքս մերովք անցանել. այլ ըստ պայմանադիր օրինաց արդարութեան՝ վախճան տալ դժտութեանս: Ապա եթէ ոչ՝ զդիս կարդամք վրէժխնդիրս երդման 'ի վկայս, զի ոչ յետնեսցուք վանել 'ի մէնջ, որ նախարշաւ նախաձեռն 'ի կռիւ լինիցի »:

ՀԹ. Զայս խօսեցան Աթենացիք: Իսկ Լակեդեմոնացիք յետ լսելոյ զբողոքս դաշնաւորաց ընդդէմ Աթենացւոց և զնոցին պատասխանիս, արտաքս հանեալ զամենեսեան զնոսա, խորհուրդ կալան զիրացս. և յաղթեաց կալաւ այս բան խորհրդի, եթէ անիրաւք են Աթենացիք և պարտ է անդանդաղ ածել 'ի վերայ նոցա պատերազմ: Եւ յառաջ մատուցեալ Արքիդամոս թագաւոր նոցա, վկայեալ 'ի նոցանէ հանճարեղ այր և խորհրդոյ, խօսեցաւ օրինակ զայս.

Ձ. « Ես ինքնին 'ի բազում պատերազմունս փորձ գըտեալ, ո՛ Լակեդեմոնացիք, 'ի նոյն և զհասակակիցս իմ 'ի ձէնջ տեսանեմ. որպէս զի մի՛ առ անփորձութեան ցանկացող նմին լինիջիք, և մի՛ զոր օրինակ յոքունց է ախտանալ, իբրու աներկեան իմիք բարւոյ զհետ պնդիցէք: Զպատերազմս զորմէ խորհիքդ արդ, ոչ թեթև ինչ գտջիք, եթէ իմաստութեամբ 'ի քնին առնուլ կամիցիք: Զի 'ի վերայ Պելոպոնէսացւոց՝ մեզ նման սահմանորդաց դիւրին է յարձակմամբ արագապէս հասանել. այլ ոչ նոյնպէս և առ հեռաբնակ մարդիկն՝ որ հմուտ նաւագնացք են, և այլով ամենայնիւ բարգաւաճք, մեծահարուստք առանձին և հասարակաց գանձուք, նաւուք, երիվարօք, զինուք և ամբոխիւ մարդկան, որչափ չիցէ այլուր 'ի Հելլէնս գտանել: Իցեն նոցա դարձեալ և չատ ժողովուրդք հարկատուք և դաշնաւորք. որպիսի՞ մարթանօք հնար է 'ի վերայ այսպիսեաց դիւրեաւ գնալ պատերազմաւ. ի՞ւ և զիա՞րդ վստահացեալ յանպատրաստից խիզախել: Ի նա՞ւս մեր արդեօք, յորում և նուազեալ յոյժ գտանիմք. և առ 'ի վարժել զմեզ 'ի նոյն և նոցին

հաւաստարել, ժամանակի պէտք են։ Բայց թերեւս 'ի գանձս մեր. այլ և յայսմ կարի անհամեմատ չքաւորիմք, զի ոչ հասարակաց գանձք են մեր, և ոչ առ ձեռն 'ի սեփականաց մերոց ստացուածոց զայն ժողովել։

ՁԱ. « Այնու թերեւս ոք խրախուսեսցէ, զի զինուք և բազմութեամբ քան զնոսա առաւելումք, և կարեմք անդուլ ասպատակութեամբ ապականել զերկիր նոցա. բայց է նոցա շատ այլ երկիր՝ որոց իշխեն, և ընդ ծով լնուն զիւրեանց պէտս պիտոյից։ Եւ եթէ փորձ փորձեսցուք յապըստամբութիւն զդաշնաւորս նոցա գրգռել, նաւուք յայնժամ պարտ է ժամանել նոցա 'ի թիկունս, յորոց յոլովք կղզայինք են։ Որպիսի՞ պատերազմ իցէ մեզ ընդ նոսա պատերազմել, եթէ չունիցիմք նաւատորմ հզօր, եթէ չկարիցեմք բառնալ 'ի նոցանէ զմուտս գանձուց՝ որով յոտին ունին նոքա զնաւական զօրութիւն. Վնասիմք առաւել քան եթէ վնասեմք, և այսպէս չկարեմք երբեք փառօք վախճան տալ կռուոյս, մանաւանդ յորժամ մեք ինքնին նախաձեռն 'ի նոյն լինիցիմք։ Եւ մի՛ սուտ յուսով պատրեսցուք զանձինս, եթէ աւերածս զարտորէիւք նոցա ածելով՝ արագապէս վախճան տամք պատերազմին. նա՛ խիթամ իսկ թէ գուցէ և որդւոց մերոց զմարտս զհետ մեր թողուցումք. զի նրբամիտ խորագէտք Աթենացիք՝ ոչ երկրին և ոչ անդաստանաց ապաս տարեալ խնայեցեն նոցին, և ոչ իբրև անփորձս ոմանս 'ի պատերազմէս երկնչիցեն։

ՁԲ. « Սակայն և ոչ յուլաբար թողուլ զնոսա հրամայեմ վնասակար դաշնաւորաց մերոց լինել, և ոչ զխորհուրդս նոցա դարանակալս անտեսել. այլ չև 'ի կռիւ ձեռն արկեալ մեր՝ հրեշտակութեամբ բողոք առ նոսա ունել, մի՛ կարի սպառնականս և մի՛ դեդեւկոտս երեւելով։ Եւ պարապով զհետ պատրաստութեան լինել, յաւելուլ մեզ դաշնաւորս 'ի Հելլենաց և 'ի բարբարոսաց, ուստի և է հայթհայթել արծաթ և նաւս. զի յորժամ անիրաւեալ նենգիցիմք, որպէս և մեք յԱթենացւոցդ, անպարսաւ է՝ ոչ 'ի Հել-

չէնս միայն, այլ և 'ի խուժս գխմել 'ի փրկութիւն. միով բա-
նիւ՝ զամենայն հնարս մարթանաց հնարեսցուք: Զի եթէ
պատկառեալ 'ի հրեշտակութենէս մերմէ անսասցեն նոքա,
բարւոք է. ապա թէ ոչ, յետ երկուց կամ երից ամաց պա-
տրաստագոյն ևս՝ եթէ արժան դատիցիմք, ելցուք 'ի վե-
րայ նոցա: Տեսեալ նոցա թերևս զմեր պատրաստութիւն
հաւասար բանիցս, և զերկիր նոցա տակաւին անկոխ և
արտորայս անճխաս, և տեղի տուեալ խոնարհեսցին: Մի
այլ ինչ հաշուեսցուք զերկիրն և զանդս, բայց եթէ գրա-
ւականս 'ի ձեռս մեր, մանաւանդ յորժամ քաջ վարեալ
իցեն այնոքիկ: Քան զամենայն պարտ է խնայել երկրին, և
մի յանյուսութիւն զթշնամին առեալ արկանել և անըմ-
բռնելիս զնոսա գործել: Զի եթէ յանպատրաստից 'ի բո-
ղոքոյ դաշնաւորաց միայն ածեալ՝ ասպատակիցեմք յեր-
կիր նոցա, տեսջիք մի որդեօք ամօթ և տագնապ տարակու-
սի զՊելոպոնեսեաւ արկանիցեմք: Մարթի լռեցուցանել
զտրտունջ քաղաքաց և առանձին մարդոց. այլ եթէ վասն
սակականաց շահու աշխարհովին 'ի պատերազմ չարժի-
ցիմք, զորոյ անհնարին է գիտել զելս կատարածին, դը-
ժուարին իցէ կնքել զայն պատուով:

ՁԳ. « Եւ մի 'ի վատութիւն ոք գրեսցէ, զանհամար-
ձակութիւն բազմաց կանխել ելանել 'ի վերայ քաղաքի
միոյ. են և նորա ոչինչ նուազ դաշնաւորք հարկատուք. և
զի պատերազմ ոչ զինուք միայն, այլ արծաթով վճարի, ո-
րով զէնք յայնժամ միայն մարթին զօրանալ, երբ մանա-
ւանդ միջերկրայքս 'ի վերայ ծովեզերեայց յառնիցեմք:
Հայթհայթեսցուք ապա նախ զարծաթ, և մի 'ի բանից
դաշնաւորաց յանխորհուրդս ձգիցիմք 'ի կռիւ, որոյ ելից
յաջողութեան կամ ձախողութեան՝ քան զայլս ամենեսին
մեք համարիցիմք պատճառս. վասն որոյ արժան է պարա-
պով նախահոգակ լինել ամենայնի:

ՁԴ. « Մի ընդ յամելս և ընդ դանդաղել՝ որով բամբա-
սիմքս անդադար, ամաչիցէք. քանզի և յաճապարել փու-

թալդ անգամ 'ի նոյն՝ սակս յանպատրաստս 'ի նոյն մխելոյ, դանդաղագոյնս ապա վախճան առնիցէք: Եւ զի ազատ ամենեւին և մեծափառ քաղաքի եմք քաղաքացիք, վասն որոյ առաւելևս արդիւնք զգօն խոհականութեան 'ի գործս մեր փայլեսցեն. զի մեք միայն ոչ 'ի յաջողս հպարտացեալ ստնքանամք, և ոչ 'ի ձախողս՝ որպէս զայլս 'ի մարդկանէ՝ վհատեալ ընկճիմք: Մի ապա, որոց հակառակ մտաց մերոց յանհնարինս մղել զմեզ նկրտին գովութեամբք իւրեանց՝ տեղի տացուք հեշտեաւ. և եթէ 'ի կշտամբանս յանդիմանութեան լուծանիցին, մի ինչ սրտնեալ անսայցեմք նոցա: Գեղեցիկ օրինօքս և՛ քաջամարտիկք և քաջախորհուրդք գտանիմք. քաջամարտիկք՝ զի ցածութիւն ընդ զգաստութեան է կցորդ, և քաջութիւն արութեան ընդ ամօթոյ պատկառանաց. քաջախորհուրդ՝ քանզի մարզեալ կրթեցաք անգիտակ ամենեւին արհամարհութեան օրինաց. և այնպէս խստակեացս և ժուժկալս զարգացաք, մինչև չմտաբերել անգամ անսաստել օրինադիր կարգաց: Չեմք ճարտար 'ի չնչին նրբութիւնս պաճուճազարդ բանից՝ որով և քամահել զկազմութիւն պատրաստութեան թշնամւոյն, այլ աննման ամենեւին գործով զհետ նոցին պնդիմք: Զխորհուրդըս մտաց ընկերին ոչ ինչ օտար 'ի մերոցս գիտելով, զդէպըս բաղդին՝ ոչ ընդ խելամտութեամբ խօսից արկանել ձըդնիմք: Իբրու ընդդէմ քաջախորհուրդ մարդկան՝ այնպէս իրօք և արդեամբք հակառակ թշնամեաց մերոց խնամով պատրաստիմք, և ոչ 'ի սխալանս նոցին որով կարենն վրիպել, դնեմք զյոյս մեր, այլ 'ի նախահոգակ զգուշութիւնս: Եւ չէ պարտ կարծել թէ բազում ինչ խտիր իցէ ընդ մարդ և ընդ մարդ, այլ կատարելագոյն այն ոք է, որ 'ի պէտս կարեւորս կիրթ գտանիցի:

ՁԵ. « Զայս ամենայն խելամտութիւնս՝ զորս հարքն մեր մեզ աւանդեցին, զոր և բազմաշահ օգտիւք հանապազ պինդ կալաք, մի թողուցուք վայրապար և յախուռն խորհրդով 'ի համառօտ ժամուս սահմանել 'ի վերայ այն-

չափ ամբոխի մարդկան, գանձուց արծաթոյ, քաղաքաց և ձերոյս իսկ պատուոյ, այլ բազում հանդարտութեամբ. զի քան այլոց՝ մեզ պարտք են զայս այսպէս առնել, զի զօրաւոր եմք: Արձակեցէք արս յԱթէնս վասն Պոտիդեայ. առաքեցէք և վասն որոյ բողոքենն դաշնաւորք զրկեալ անիրաւութեամբ, երբ ինքնին մանաւանդ Աթենացիք 'ի դատ և յիրաւախոհութիւն գալ կամիցին. և չէ օրէն իբրև զվնասապարտ հալածել զայր՝ որ անսալ արդարութեան յօժարիցի, բայց և մի 'ի պատրաստութենէդ դլալ դադարել: Զայս այսպէս քաջապէս խորհեալ, և հակառակորդաց ձերոց ահաւորք լինիցիք»:

Զայսոսիկ Արքիդամոս խօսեցաւ: Յառաջ մատուցեալ ապա Սթէնելայիտ ոմն 'ի Պարետաց ժամանակին, խօսել կալաւ և նա առ Լակեդեմոնացիս օրինակ զայս.

ՁՁ. «Ի բազում խօսից անտի Աթենացւոց չառնում ինչ 'ի միտ, որ յետ երկար անձնագովութեան՝ չարարին ինչ բանս զհակառակ ամբաստանութեանցն, եթէ չիցէ նոցա հարստահարեալ զդաշնաւորս և զՊելոպոնեսացիս: Եթէ առաքինացան նոքա երբեմն ընդդէմ Մարաց, չարաչար արդ ընդ մեզ գնան. որով կրկնակի պատժոց պատուհասից արժանի են, զի 'ի բարւոյն 'ի չար փոխեցան: Իսկ մեք նոյնպիսիք ոմանք եմք և յայնժամ և այժմ. եթէ իմաստութեամբ խորհիցիմք՝ մի անտես արասցուք զզրկանս դաշնաւորաց մերոց, և մի յապաղեսցուք խնդրել զվրէժ նոցին, և զառաջս առնուլ զպառնացեալ չարեաց: Այլոց բազում գանձք իցեն արծաթոյ և նաւք և ձիանք. և մեր են արդարև ընտիր ընտիր նիզակակիցք դաշնաւորք, զորս չէ պարտ 'ի ձեռս Աթենացւոց մատնել. և մի դատաստանաւ ատենի խուզարկու վիճից նստել, զի ոչ բանիւ լոկով միայն զթշնամանս կրեցին նոքա. պարտ է ուրեմն ապա փութով և զօրութեամբ ուժոյ վաղվաղել նոցա յօգնականութիւն: Եթէ իւ մեզ զրկելոցս արժան է 'ի խորհուրդ գալ, մի ոք զմեզ ուսուցանել ջանայցէ. նոցա իցէ յաւէտ յամել եր-

կարագոյն 'ի խորհուրդ՝ որոց միոյ զչարութեամբ յածէին
միշտ: Սահմանեցէք ուրեմն, ո՛ Լակեդեմոնացիք, արժանի
անուան Սպարտայ՝ պատերազմ, և մի՛ թողուլ առաւելքան
զառաւել սոնքանալ մոզանալ Աթենացւոցդ, և ազատ համ֊
արձակ ձեռն 'ի դաշնաւորս մեր արկանել. այլ ելցուք օգ֊
նականութեամբ դից 'ի վերայ անիրաւ հարստահարողացն
այնոցիկ »:

ՁԷ. Զայս ասաց նա, և որպէս Պարէտ առաջի արար
ժողովոյ Լակեդեմոնացւոց տալ զիւրաքանչիւր վճիռ հա֊
ւանութեան: Եւ զի 'ի ձայն բարձր և ոչ 'ի գաղտնի քու֊
եայս սահմանէն նոքա զկամս ընտրութեան իւրեանց, չիմա֊
նալ, ասէր Սթէնելայիտ, յո՛ր կողմն իցէ առաւելութիւն
ձայնին. և կամելով զի յայտնաբարբառ ծանուցեալ զկար֊
ծիս՝ առաւել ևս գրգռեսցին 'ի պատերազմ, « Որոց լու֊
ծեալ դաշինք թուիցին, ասէ, և վնասապարտ զԱթենացիս
դատեսցեն, յայս դէհ անցեալ կացցեն, ( և մատնանիշ ըղ֊
վայրն ցուցանէր), և որոց ոչ այնպէս՝ 'ի միւս կողմն ելցեն »:
Յարուցեալ ժողովականաց 'ի կրկին զատուցան խումբս,
և առաւելոյր յոյժ մասն բազմութեան, որոց լուծեալ հա֊
մարէին զդաշինսն: Ի ներքս կոչեալ յայնժամ զդեսպանս դաշ֊
նակցաց՝ և ծանուցին նոցա, թէ և առաջի ժողովոյն վնա֊
սապարտք դատեցան Աթենացիք. այլ կամք էին նոցա հա֊
մախմբել զդաշնակիցս և գիտել զխորհուրդս նոցա, զի միա֊
բան ձուլիւք հաւանութեամբ 'ի պատերազմ ձեռնարկես֊
ցեն, եթէ այնպէս ինչ հաճոյ երևեսցի: Եւ զայս այսպէս
'ի գլուխ տարեալ, մեկնեցան իւրաքանչիւր 'ի տուն իւր.
յետոյ ուրեմն և դեսպանացն Աթենացւոց վճարեալ որոց
վասն եկեալ էին, գնացին և նոքա: Եւ ծանուցաւ այդ ժո֊
ղովոյս լուծանելոյ խաղաղութեան 'ի չորեքտասաներորդի
ամի երեսնամեայ դաշնաւորութեան՝ յետ Եւբեան պատե֊
րազմին:

ՁԸ. Եւ ետուն վճիռս հաւանութեան Լակեդեմոնա֊
ցիք 'ի լուծումն դաշանց և 'ի պատերազմ առաջինկայ, ոչ

այնչափ 'ի բանից այտի դաշնաւորաց իւրեանց յորդորեալք, որչափ յերկեղէ Աթենացւոց, զի մի՛ և ևս զօրացեալ մեծանայցեն նոքա, որոց արդէն իսկ զմեծ կէս Ելլադայ ընդ ձեռամբ հպատակեալ էր:

ՁԹ. Եւ ահա այս օրինակ յառաջեալ մեծացան 'ի զօրութենէ 'ի զօրութիւն Աթենացիք: Զի իբրև ընդ ծով և ընդ ցամաք վատթարեալ Մարք առաջի Հելլենաց մեկնեցան յԵւրոպիոյ, և փախստեայք 'ի նաւս խորտակեցան 'ի Միկաղէ, և Լէոտիքիդէս արքայ Լակեդեմոնացւոց՝ որ զօրավարէրն Հելլենաց 'ի մարտիս, դարձ արար յերկիր իւր և դաշնաւորք նորա Պելոպոնեսացիք ընդ նմա, Աթենացիք յայնժամ և որք 'ի Յոնիոյ և յԵլլեսպոնտեայ դաշնաւորք էին նոցա, կանուխ զատուցեալք 'ի Թագաւորէն՝ յառաջ վարէին զպատերազմն, պաշարեալ զՍեստոս քաղաք 'ի վերայ Մարաց, և ձմերելով անդանօր 'ի մեկնել բարբարոսաց՝ առին զքաղաքն, և ելեալ ապա յԵլլեսպոնտեայ դարձան իւրաքանչիւր յերկիր իւր:

Իսկ ժողովուրդն Աթենացւոց յետ մեկնելոյ բարբարոսաց յաշխարհէն իւրեանց, ածեալ վաղվաղակի զմանկունս, զկանայս և զկարասին, առ որս յաւանդ թողեալ էր, ձեռն արկին 'ի վերստին շինութիւն քաղաքին և պարսպաց. զի 'ի շրջապատ քաղաքորմոյն մասն մի միայն ողջ մնայր, և բազումք 'ի բնակութեանց կործան անկեալ, սակաւք միայն 'ի տանց ապրեալք, յորս աւագորեարն Պարսից բնակութիւն կալեալ էր:

Ղ. Իրազեկ լեալ այսմ Լակեդեմոնացիք՝ հրեշտակութեամբ եկին յայնժամ յԱթէնս. ոչ միայն զի հաճոյ էր նոցա անպարիսպ զնոսա տեսանել, որպէս և զայլս զամենեսին, այլ և 'ի դաշնաւորաց գրգռեալք, որք 'ի բազմախումբ նաւաց Աթենացւոց խիթային, և 'ի յանդուգն համարձակութենէն՝ զոր 'ի Մարական պատերազմին ցուցին նոքա: Եւ յորդոր լինէին նոցա մի՛ պարսպաւ զքաղաքն ամրացուցանել. մանաւանդ միաբանութեամբ քակել զամենայն

ամրութիւն արտաքոյ Պեղոպոնեսեայ. ոչ ինչ յայտնապէս զգիտումն խորհրդոյ իւրեանց և զկասկած երկիւղին 'ի վեր հանել կամելով, բայց թէ 'ի դառնալ բարբարոսին վերստին՝ չգտցէ իւր ամուր յոտնկախ, յորմէ՝ որպէս յառաջնումն 'ի Թեբայ, զիւր յարձակումն արասցէ. և թէ շատ է վասն ամենեցուն նոցա Պեղոպոնէս վայր ապաստանի և տեղի պատկանաւոր զինուց և սկիզբն առնելոյ պատերազմի: Աթենացիք ըստ խրատու Թեմիստոկլեայ արարին նոցա պատասխանի, թէ ընդ հուպ վասն այդր իրի արասցեն հրեշտակըս, և արձակեցին զՂակեդեմոնացիս: Խորհուրդ ետ Թեմիստոկլէս՝ փութալ առաքել զինքն 'ի Ղակեդեմոն, ընտրել իւր և իշխանակիցս զհետ նորա արձակելոյ. բայց մնալ յառաջելոյ շինութեան պարսպաց, յորոց 'ի կարևոր բարձրութենէ վերամարտիկ լինել կարասցեն: Եւ 'ի գործ շինուածոյս ձեռն արկանել քաղաքովին, ինքեանք և կանայք նոցա և որդիք, ոչ խնայելով ոչ 'ի հասարակաց և ոչ յառանձին շէնս, յորս ինչ մի պիտանացու երևէր 'ի կառոյց նորին, այլ զամենայն անխնայ տապալել: Զայս ամենայն այսպէս կարգեալ, և զոր 'ի Ղակեդեմոն ունէր առնել՝ կանուխ յառաջագոյն ծանուցեալ, ել և գնաց: Հասեալ նորա 'ի քաղաքն՝ պատճառելով յամէր չելանել առ վարիչս. և 'ի հարցանել յաւագորերոյն զվասնէր յապաղելոյն 'ի յանդիմանութիւն ատենին, իշխանակցաց իւրոց մնալ, ասէր, զորս վասն գործոյ իրիք թողեալ, և ակն ունէր ընդ հուպ գալստեան, և զարմանայր իսկ ընդ այնչափ յամել նոցին:

ՂԱ. Եւ լուեալ զայս Ղակեդեմոնացւոց՝ առ սէր բարեկամութեան Թեմիստոկլեայ՝ հաւատս ընծայէին նմա. բայց 'ի զրուցաց եկաւորաց այտի յայտնապէս հռչակեալ՝ թէ յառաջանայր շինուած պարսպին 'ի բարձրութիւն, չկարէին և նոցին պատմելեացն անհաւատ լինել: Զայս գիտացեալ Թեմիստոկլէս՝ յորդորէր զնոսա մի 'ի խաբս բանից օտարաց ըմբռնել. այլ արձակել յիւրեանց անտի որեար հաւատարիմ, որք 'ի մօտոյ ականատես վկայ իրացն՝ բերցեն

զրոյցս ստուգութեամբ։ Եւ 'ի յղել նոցա զարսն, բանագնաց լինէր 'ի ծածուկ Թեմիստոկլէս յԱթէնս, պատուէր տալով պահել զպատգամաւորսն զգուշութեամբ. և մինչև դեսպանաց իւրեանց դարձ անտի 'ի քաղաքն արարեալ՝ չթողուլ զարսն մեկնել։ Քանզի կանուխ իսկ հասեալ էին իշխանակիցք նորա՝ Աբրոնիկոս որդի Լիսիկլեայ և Արիստիդէս Լիւսիմաքեան, պատմէին վասն շատ իսկ ամբառնալոյ պարսպացն. որովհետև կասկածէր նա թէ 'ի հասանել Լակեդեմոնացւոց 'ի վերայ իրացն ճշմարտութեամբ՝ չթողուցուն նոցա գնալ։ Իսկ Աթենացիք ըստ պատուիրանին Թեմիստոկլեայ արգելին զդեսպանսն. և Թեմիստոկլէս մատուցեալ առ Լակեդեմոնացիս՝ ծանոյց նոցա յայտնապէս, թէ պարսպեալ է արդ քաղաքն, և թէ բաւական է նա 'ի փրկութիւն բնակչաց իւրոց. և եթէ Լակեդեմոնացիք և կամ դաշնաւորք նոցին վասն իրաց ինչ հրեշտակութիւնս առ նոսա կամեսցին առնել, երթիցեն այսուհետև առ մարդիկն՝ որ գիտեն քաջ զիւրեանց անցնիւր և զհասարակաց շահս օգտին։ Զի 'ի դէպ ժամանակի գեղեցիկ խորհրդով թողեալ նոցա զքաղաքն՝ ամբարձան 'ի նաւս. և առանց նոցին Լակեդեմոնացւոց թելադրութեան գիտացին գալ յայս համարձակութիւն, և յամենայն իսկ խորհուրդս ոչինչ յետնեալ գըտան քան զնոսա 'ի հանճար. և այժմ արդ բարւոք թուեցաւ նոցա պարսպել զքաղաքն, վասն բնիկ իւրեանց քաղաքացւոց և համայն իսկ դաշնաւորաց շահաւէտ զայն համարեալ. զի անմարթ էր դաշնաւորաց՝ առանց զոյգ հաւասար կազմածոյ և պատրաստութեան, միօրինակ հաւասար արդարութեամբ 'ի խորհուրդս հասարակաց երևել. վասն որոյ կամ առանց պարսպաց և ամրութեան ամենայն քաղաքաց 'ի նիզակակցութիւն պարտ էր գալ, և կամ ընդ ուղղութիւն գործոյս հաւանեալ լսել։

ԿԲ. Ի լուր բանիցս այսոցիկ ոչինչ յայտնապէս դըժգոհեալ Լակեդեմոնացիք ընդ Աթենացիս, զի ոչ եթէ յարգել հրամանի, այլ բանագնաց միայն լինել յԱթէնս հա-

մարէին. դարձեալ զի մտերիմ սիրելութիւն էր առ նոսա յայնժամ, վասն մտադիւր արութեան նոցա ընդդէմ Մարաց. բայց և այնպէս ընդ վրիպել խորհրդոց իւրեանց տրտմեցան 'ի ծածուկ, և դեսպանք աստի և անտի մեկնեցան պատուով խաղաղութեամբ:

ՂԳ. Եւ այսպէս անհա 'ի սակաւ աւուրս պարսպեալ ամրացուցին Աթենացիք զքաղաքն, և երևին ցայսօր իսկ նշմարք փութանակի շինութեան. հիմունքն 'ի բազմացեղ և 'ի բազմադիմի քարանց եդեալ և 'ի բազում ուրեք ոչ քաջ ագուցեալ, այլ որպէս ոք մատուցանէր՝ արկեալ 'ի գործ. և շատ իսկ կոթողք շիրմաց և վէմք կոփածոյք խառն 'ի խուռն յորմածս, և զի մեծապէս ընդարձակէր ամենուստ շրջապատ քաղաքին, վասն որոյ և զամենայն ինչ անխտիր ածեալ 'ի շինուածն:

Հաւանեցոյց դարձեալ Թեմիստոկլէս զԱթենացիս 'ի լրումն հասցորդ շինուածոյն Պիրէոնի, զոր սկսեալ էր յառաջագոյն յամի անդ տարևոր իշխանութեան իւրում. զի պատկանաւոր զտեղին համարէր՝ զերիս ունելով 'ի բնէ հանգրուանս նաւաց, որոց նաւագնացք գոլով և իշխանք ծովու, մարթ էր ստանալ նոցա զօրութիւն մեծ: Որ համարձակեցաւն նախ հաւանեցուցանել զԱթենացիս գլխովին իսպառ նաւաստականութեան զհետ կրթել, որով սկիզբն եդև ծովային պետութեան նոցա: Եւ ըստ խորհրդոյ նորին Թեմիստոկլեայ կառուցան պարիսպքն 'ի Թանձրութիւն, զոր և այսօր է տեսանել 'ի Պիրէոնին, յորում սայլք երկու դէմընդդէմ իրերաց կրէին անարգել զքարինս: Եւ 'ի միութիւն կցորդութեան ոչ խիճք երևին և ոչ շաղախ, այլ վէմք մեծահատորք անկիւնաւորք և արտաքուստ երկաթակապ և կապարաւ պնդեալք: Իսկ բարձրութիւն որմոցն 'ի կէս միայն եհաս՝ զոր սահմանեալ էր Թեմիստոկլեայ. զի խորհէր նա բարձրութեամբ, որպէս և Թանձրութեամբ պարսպացն 'ի դերև հանել զամենայն յարձակմունս Թշնամեաց. և սակաւուք ոմամբք ոչ ինչ պիտանեօք

մարդովք պահել զայն, և զայլս զամենեսին ամբառնալ 'ի նաւս, զի նաւական զօրութեան առաւել միտ դնէր. քանզի խորհէր, որպէս ինձ թուի, դիւրագոյն ես յաջողել արշաւանաց արքային յեղլադա ընդ ծով քան ընդ ցամաք: Որով կարեւոր ես համարէր զՊիրէոն՝ առաւել քան զամրակողմն գլուխ քաղաքին. և սաէպ խրատ տայր Աթենացւոց, զի թէ դէպ լիցի երբէք նոցա բռնադատիլ 'ի ցամաք կուսէ՝ իջցեն 'ի Պիրէոն 'ի նաւամարտ ընդ թշնամւոյն: Այսպէս ուրեմն պարսպեալ ամրացան Աթենացիք, և կառուցեալ կանգնեցաւ քաղաքն նոցա վաղվաղակի յետ մեկնելոյ Մարաց:

ՂԴ. Իսկ Պաւսանիաս Կլէոմբրատեան առաքեցաւ 'ի Լակեդեմոնացւոց քսան նաւուք Պելոպոնեսացւոց 'ի զօրավար Հելլենաց: Եկին խառնեցան ընդ նոսա և Աթենացիք երեսուն նաւուք, և բազմութիւն այլոց դաշնաւորաց: Խաղացին սոքա 'ի Կիպրոս, և զմեծ մասն կղզւոյն կալեալ՝ անցին անտի 'ի Բիւզանդիոն ընդդէմ Մարաց, և պաշարմամբ առին զքաղաքն:

ՂԵ. Եւ զի յառաջնորդութեան անդ ևւրում'ի բռնակալութիւն թուէր միտել Պաւսանիաս, տաղտկացեալ ուծացան 'ի նմանէ Հելլենք, մանաւանդ Յոնիացիք և որք այն ինչ ազատեալ էին յիշխանութենէ թագաւորին. և յաճախեցին առ Աթենացիս աղաչելով զնոսա՝ յանձն առնուլ զզօրավարութիւն համազգեաց տոհմայնոց. և մի անտես առնել զնոսա, եթէ երբէք բռնանալ կամեսցի 'ի վերայ նոցա Պաւսանիաս: Յօժարութեամբ ընկալան զաղերս նոցա Աթենացիք, և խնամ կալան չլինել թերահոգ 'ի կարգելոյ զամենայն յօգուտ դաշնաւորաց: Մինչ այս ևւրք էին՝ կոչեցին Լակեդեմոնացիք զՊաւսանիաս 'ի պատասխանատուութիւն վասն ամբաստանութեանց զոր լսէին զնմանէ. քանզի եկեալ բազում ինչ չարախօսէին զառնէն Հելլենք, և թէ քան զզօրավարութեան՝ զբռնակալութեան կերպարանս տայր նա: Դէպ եղև 'ի նմին ժամանակի ընդ եկակոչ հրա-

մանէին առ Պաւսանիաս՝ անցանել և դաշնաւորաց առ ատելութեան նորա վարանջութեամբ 'ի զօրացն Պելոպոնեսացւոց 'ի կողմն Աթենացւոց։ Իբրև եհաս Պաւսանիաս 'ի Լակեդեմոն, վասն երեք երեք փաստուցն մեղուցելոց առ ոմանս՝ պատուհասեալ, իսկ 'ի ծանունց առանց քննութեան արձակեցաւ. և որոյ վասն ամբաստանէրն ըստ մեդացն տարազու և ըստ սովորութեան կերպարանելոյ զինքն՝ որում և չէին պէտք հաւաստեաց։ Ոչ ևս այլ առաքեցին զնա Լակեդեմոնացիք զօրավարութեամբ, այլ զԴորկիս ոմն ընդ ընկերսն և զօրական սակաւաձեռն, որոց չետուն դաշնակիցք զառաջնորդութիւն բանակին. զոր և տեսեալ Լակեդեմոնացւոց ելեալ մեկնեցան. և ոչ ևս այնուհետև յղէին զոք 'ի զօրավարութիւն, զի մի արտաքոյ աշխարհին զեղծցին իշխանութեամբ քաղաքացիքն, զոր օրինակ 'ի Պաւսանիաս տեսին. և զի ցանկային ազատ լինել 'ի Մարական պատերազմէն, բաւականս տեսանելով զԱթենացիս յառաջնորդութիւն՝ ընդ որս բարեկամութեամբ էին յայնժամ։

ԿԶ. Իբրև այսպէս առ ատելութեան Պաւսանեայ՝ մատդիւր յօժարութեամբ դաշնակցաց կալան Աթենացիք զառաջնորդութիւն զօրուն, օրինադրեալ սահմանեցին միում միում 'ի քաղաքաց՝ որ արծաթով և որ նաւուք սատար լինել պատերազմին ընդդէմ բարբարոսին. և պատճառանօք վրիժառու լինելոյ չարեաց արքայից արքային՝ հինաբար ասպատակէին յերկիր նորա։ Եւ կարգեցան յայնժամ զայս առաջին նուագ առ Աթենացիս իշխանք հարկապահանջք, ժողովել զտուրսն 'ի գանձ հասարակաց Հելլենաց. առաջին սակ հարկին հատաւ չորեքհարիւր վաթսուն տաղանդ. և պահարան գանձուն էր Դելոս, յորում և խմբէին իսկ 'ի մեհենին յատեան խորհրդոյ։

ԿԷ. Եւ առաջնորդէին 'ի սկզբան անդ Աթենացիք՝ սեպհական օրինօք ազատ և հասարակաց խորհրդոյ հաւասար հաղորդ դաշնաւորաց։ Եւ որ միանգամ ընդ արշաւանս այս Մարաց և ընդ այս վերջին պատերազմն 'ի յան-

ճանճանս աշխարհին, կամ 'ի մարտ ընդ բարբարոսին և ընդ ըծընկէց դաշնաւորս և ընդ Պելոպոնեսացիս՝ որոց ձեռն միշտ ընդ ապստամբսն էր՝ գործեցին. զայս ամենայն առեալ մանր՝ զարտուղելով յընթացից պատմութեանս Ճահագրեմ. զի որ յառաջ քան զիս կացին պատմագիրք, զանց զսովիմբք արարեալ, զդէպս անցից միայն զՀելլենաց յառաջ քան զպատերազմն մարական, և կամ զսոյն զայս լոկ առեալ աւանդեցին: Եւ Հելլանիկոս՝ որ յատտիկեան յիւրում պատմագրութեան ակնարկէ զկրացս, սղագունիւք յոյժ և ոչ ճըշտիւ դառակաւ յիշատակագրէ զժամանակացս. ուր իմս երկասիրութիւն արդարև զաւանդս իմն հաւաստիս ընծայէ զնշխանութենէ Աթենացւոց՝ թէ որով օրինակաւ հաստատեալ ամրացաւ այն:

ՂԸ. Ընդ զօրավարութեամբ Միլտիադեան Կիմոնի պաշարեալ կալան նախ 'ի ձեռաց Մարաց զՅիոն քաղաք 'ի վերայ Ստրիմոն լճին, և գերեցին զբնակիչս. ապա զՍկերոս կղզի յԵգեան ծովուն, և յորում բնակէին զԴոլոպս՝ 'ի գերութիւն վարեալ, փոխանակ նոցա ինքեանք կալան զբնակութիւն: Եղև նոցա մարտ պատերազմի և ընդ Կարիստիացիս, առանց խառնելոյ 'ի նոյն և այլոց Եւբիացւոց, ընդ որս ապա յուխտ խաղաղութեան մտին: Յետ այնորիկ և զՆաքսիացիս վտարանջեալս 'ի նեղ արկեալ՝ 'ի հարկի ծառայութեան կացուցին: Սա եղև առաջին քաղաք 'ի դաշնաւորայ՝ որ ընդդէմ հաստարակաց իրաւանց, ընդ լծով հըպատակութեան մուծաւ, որում զհետ յաջորդեցին ապա և այլք:

ՂԹ. Ի բազմապատիկ վնասս ստամբակութեան՝ ծանունք համարէին, յուրաստ կալ 'ի տրոց հարկաց, 'ի կազմելոյ նաւս, և հրաժարել յօրինադրեալ զինուորութենէ: Եւ զի խստիւ պահանջէին զայսոսիկ Աթենացիք, վասն որոյ դժպհիք լինէին անսովորիցն և անժուժից տանելոյ հարկի բռնութեան: Եւ զի ոչ ևս այլ համբոյրք էին Աթենացիք 'ի վարչութեան՝ որպէս երբեմն, և ոչ հաւասարք 'ի զինուո-

րութեան՝ զի դիւրին էր նոցա այնուհետև նուաճել զվտարանջեալսն, որում և ինքնին պատճառս տային դաշնաւորք: Եւ քանզի առ յուլութեան 'ի զինուորութիւն՝ յոլովք 'ի նոցանէ գանգատելով թողուլ զտուն և զընտանիս, փոխանակ նաւաց՝ հարկէին հարկս արծաթոյ. և այսպէս մեծանայր 'ի ծախուց անտի դաշնաւորաց նաւական զօրութիւն Աթենացւոց. որով և 'ի կամել նոցա թօթափել յանձանց զայս լուծ՝ անպատրաստք գտանէին և չքաւորեալք յամենայնի 'ի կռիւ մարտի:

ծ. Յետ այնորիկ դէպ եղև Աթենացւոց և դաշնաւորաց նոցա պատերազմել առ Եւրիմեդոն գետով 'ի Պամփիլիա ընդդէմ Մարաց՝ ընդ ծով և ընդ ցամաք. յորում և յաղթողք գտեալ Աթենացիք ընդ զօրավարութեամբ Միլտիադեան Կիմոնի և յերկոսին իսկ 'ի կռիւս, և գերեալ զգումարտակ նաւացն Փիւնիկեցւոց, խորտակեալ ապականեցին իբր զերկերիւր նաւս պատերազմիկս: Որում յաջորդեաց յետ ոչ բազմաց վտարանջութիւն Թասոսացւոց, որ 'ի պատճառս շտեմարանաց վաճառուց և բովուց յայնկոյս Թրակիոյ յետս կացին յԱթենացւոց: Խաղացին Աթենացիք 'ի Թասոս, և ծովամարտիւ վանեալ զհակառակորդս՝ թափեցին զօրս 'ի կղզին: Զայսու ժամանակաւ դէպ եղև նոցա հատուածոյ պատճառաւ՝ առեալ առաքել բիւր մի մարդկան յիւրեանց անտի քաղաքացւոց և 'ի դաշնաւորաց 'ի լճափունս Ստրիմոն գետոյ 'ի բնակութիւն, և զվայրն Իննաշաւիղ[1] կոչէին յայնժամ, և այժմ արդ Ամփիպօլիս: Կալան նոքա զտեղին 'ի ձեռաց Եդոնացւոց, և անտի խաղացեալ 'ի միջերկրայս Թրակիոյ՝ հարեալ խորտակեցան 'ի Դրաբեսք Եդոնացւոց յաշխարհօվն ամբոխէ Թրակացւոց, յորոց փուշ էր յաչս գաղութն այն Իննաշաւղեան:

ծԱ. Պարտեալ Թասոսացւոց 'ի կռիւս և պաշարեալք՝ կոչեցին զԼակեդեմոնացիս 'ի թիկունս իւրեանց, յորդորե-

[1] Ἐννέα ὁδούς.

լով զնոսա արշաւանս դնել յԱտտիկէ։ Որոց խոստացեալ առնել նոցա զայդ զանխուլ յԱթենացւոց, իբրև պատրաստէին 'ի նոյն՝ արգելան 'ի սասանութենէ երկրի, յորում Իլոտք և շրջաբնակք նոցա Թուրիացիք և Եթէացիք ապստամբեցան յԻթովմէ։ Բազումք յԻլոտաց սերունդք էին 'ի նախնեաց Մեսսենիացւոց նուաճելոց 'ի ծառայութիւն, որով և առ հասարակ միով անուամբ Մեսսենիացի կոչէին։ Եւ եղին Լակեդեմոնացիք պատերազմել ընդ ապստամբսն յԻթովմէ։ Իսկ Թասոսացիք յետ եռամեայ պաշարման խոնարհեցան առաջի Աթենացւոց, քակելով զպարիսպս քաղաքին, տալով 'ի դուրս զնաւս, և կշռելով այսչափ ինչ արծաթ առ ժամայն, և հարկել հարկս այնուհետև, թողեալ 'ի նոսա և զկալուածս իւրեանց 'ի ցամաք երկրին և զբովս։

ԾԲ. Եւ իբրև երկարէր պատերազմ Լակեդեմոնացւոց յԻթովմէ, կոչեցին նոքա ընդ այլ դաշնաւորս և զԱթենացիս յօգնականութիւն, որք և ընդ զօրավարութեամբ Կիմոնի եկեալ հասին բազմաձեռն գնդաւ։ Հրաւիրեցին զնոսա Լակեդեմոնացիք 'ի համբաւ պարսպամարտ ճարտարութեան նոցին. այլ յերկարել պաշարման՝ համարեցին վրէպ եղեալք 'ի յուսոյն, որ կարէին բուռն յարձակմամբ առնուլ զքաղաքն։ Ի յարշաւանէս աստի սկիզբն եղև գժտութեան 'ի մէջ Լակեդեմոնացւոցն և Աթենացւոց. զի տեսեալ Լակեդեմոնացւոց եթէ ակարացան առնուլ զքաղաքն պատերազմաւ, և երկուցեալ 'ի ձեռներէց և 'ի նորասէր բարուց Աթենացւոց այլացեղից ամենևին, և թէ գուցէ 'ի յամել նոցա անդ՝ սադրանօք Իթովմէացւոց 'ի յեղափոխութիւն ինչ մտաբերեսցեն, զնոսա միայն յօգնական դաշնակից զօրուէն արձակեցին երթալ՝ ոչ յայտնելով զկարծիս երկիւղին, բայց այնաւ միայն՝ թէ չունէին այլ ևս օգնականութեան նոցա պէտս։ Զգացին Աթենացիք թէ ոչ 'ի բարւոք ինչ մտս արձակին, բայց եթէ առ երկմտելոյ զնոցանէ. վասն որոյ և զկծեալք ընդ այս տարապարտուց նախատինս՝ դարձ արարին յերկիր իւրեանց. և թողեալ ըզ-

նիզակակցութիւն Լակեդեմոնացւոց՝ զոր կռեցին ընդդէմ Մարաց, դաշնաւորեցան ընդ Արգիացիս ընդ թշնամիս նոցուն, յորս յաւելան ապա և Թեսսաղացիք նովին երդմամբ նիզակակցութեան:

ձԳ. Իսկ որ յԻթովմէ էին՝ յետ տասնամեայ պաշարման ոչ ևս այլ կարելով ժուժկալել, ձեռս 'ի Լակեդեմոնացիս ետուն, և ելին մեկնեցան 'ի Պելոպոննեսեայ երդմամբ մի ևս այլ դառնալոյ 'ի նոյն. և եթէ ըմբռնեսցի ոք 'ի նոցանէ, որում կալցէ զնա՝ լիցի նմա 'ի ծառայ: Քանզի վաղնջուց պատգամ էր Պիւթեայ առ Լակեդեմոնացիս՝ թողուլ ազատ զաղերսարկուս Իթովմեական Արամազդայ, որով յազատութիւն արձակեցան ինքեանք և որդիք նոցա և կանայք. զորս ժողովեալ Աթենացւոց իբրև 'ի հեձուկս Լակեդեմոնացւոց և բնակեցուցին 'ի Նաւպակտոն՝ այն ինչ առեալ զայն 'ի Լոկրացւոց Ոզոլեանց: Թողեալ յայնժամ և Մեգարացւոց զԼակեդեմոնացիս՝ յաւելան 'ի դաշնաւորս Աթենացւոց, զի վասն սահմանաց երկրին նեղէին զնոսա Կորնթացիք պատերազմաւ: Այսպէս կալան Աթենացիք զՄեգարա և զՊեգա՝ կանգնեցին զերկայն պարիսպն Մեգարացւոց՝ որ 'ի քաղաքէ անտի նոցա ձգէր մինչև 'ի Նիսէ, կարգելով 'ի նմա պահանորդս: Եւ սկիզբն լինէր այսուհետև մեծի ատելութեան Կորնթացւոց ընդ Աթենացիս:

ձԴ. Իսկ Ինարոս որդի Փսամետիքեայ Լիբէացի, թագաւոր Լիբիոյ՝ սահմանորդ աշխարհին Եգիպտացւոց, ելեալ 'ի Մարեայ 'ի քաղաքէն՝ որ անդրագոյն է քան զՓարոս, և զմեծ կողմն Եգիպտոսի ապստամբեցոյց ընդդէմ Արտաշիսի արքայի. և ինքնին առաջնորդ ապստամբութեանն՝ կոչեաց յիւր 'ի թիկունս զԱթենացիս, որոց 'ի Կիպրոս գոլով յայնժամ, շարժեցան խաղացին երկերիւր նաւուք և համագունդ բանակաւ և դաշնաւորօք գալ առ նա: Եւ նաւագնաց ընդ Նիլոս՝ տիրեցին գետոյն և մեծի կիսոյ մասին Մեմփեայ, և մարտ եդեալ կռուէին 'ի վերայ մնացելոյ քաղաքին՝ Սպիտակ պարիսպ անուանեալ. յորում

ամրացեալ նաւէին 'ի Պարսից և 'ի Մարաց փախստեայք, և Եգիպտացիք՝ որոց ձեռն չէր ընդ ապստամբս:

ԾԵ. Եւ եղև 'ի ժամանակիս յայսմիկ իջանել Աթենացւոց նաւուք յԱլիաս ընդդէմ Կորնթացւոց և Եպիդաւրացւոց, յորում մարտի յաղթողք գտան Կորնթացիք: Յետ այնորիկ հանդիպեալ Աթենացւոց 'ի Կեփալիա՝ հարին ծովամարտիւ զՊելոպոնէսացիս. դարձեալ եղև պատերազմ ընդ մէջ Եգինացւոց և Աթենացւոց, և նաւամարտ սաստիկ մօտ յԵգինէ դաշնաւորօք իւրեանց հանդերձ. և զօրացեալ Աթենացւոց գերեցին նաւս եօթանասուն 'ի թշնամեաց, և էլեալ 'ի ցամաք ընդ զօրավարութեամբ Լէոկրատեայ որդւոյ Ստրիպեայ՝ պաշարեցին զքաղաքն: Փութացան Պելոպոնեսացիք ձեռն տալ Եգինացւոց. յղեցին նոցա զգունդն երեքհարիւր ասպարաւորաց, երբեմն օգնական Կորնթացւոց և Եպիդաւրացւոց, և կալան զբարձունս Գերանիոյ: Թափեցին և Կորնթացիք զօրս 'ի Մեգարա, անհնարին կարծելով հասանել Աթենացւոց այդր 'ի թիկունս. զի մեծ բանակ զօրու նոցա յԵգինա էր յայնժամ և յԵգիպտոս, որոց եթէ օգնել կամէին՝ պարտ էր թափել իսպառ յԵգինայ: Իսկ Աթենացիք անխլիրտ յԵգինա, մընացորդովք քաղաքացւովք, ծերովք և մանկաւով հասին 'ի Մեգարա՝ զօրավար ունելով իւրեանց զՄիւռոն: Եւ եղև պատերազմ հաւասար բաղդիւ աստի և անտի, և իբրու հանդիպապատիւք բաժանեցան իրերաց ախոյեանք. բայց Աթենացիք առաւելեալք՝ 'ի մեկնել Կորնթացւոց նշան յաղթութեան կանգնեցին: Կորնթացիք այպնկատակ 'ի ծերունեաց քաղաքին, և զաւուրս երկոտասան 'ի պատրաստութիւնս յամեալ, եկին ապա կանգնել և ինքեանք նշան յաղթութեան. բայց Աթենացւոց ելեալ 'ի Մեգարայ՝ սպանին զորս նշան կանգնել կամէին, և զայլս հարեալ վանեցին:

ԾԶ. Եւ 'ի հալածական փախստէիցն ոչ սակաւք մոլորեալք զճանապարհայն, անկան 'ի կալուած սուսկականի ու-

րուք՝ անել շուրջ փոսելով խրամաւ, զոր և իմացեալ Աթենացւոց կալան զմուտս ասպարաւոր գնդաւ, և զմեկնակազէնսն կացուցեալ շուրջանակի՝ քարակոչկոծ սատակեցին զըմբռնեալս 'ի նմա: Եւ եղև այս 'ի ցաւ անհնարին Կորընթացւոց, և դարձաւ բանակ զօրուն յերկիր իւր:

ծէ. Զայսու ժամանակաւ սկիզբն արարին Աթենացիք շինութեան երկայն պարսպին մինչև 'ի ծով Փալերեայ և Պիրէոնին: Եւ Փոկէացիք արշաւանս արարին 'ի Դորիս, 'ի մայր գաղթականին Լակեդեմոնացւոց՝ 'ի Պէոն, 'ի Կիտին, և յԵրինէոս, և կալան զմի 'ի փոքունց քաղաքացս յայսոցիկ: Իսկ Լակեդեմոնացիք առաջնորդութեամբ Նիկոմիդեայ որդւոյ Կլէոմբրոտեայ, փոխանակի Պլիստոնաքսեայ մանկան արքայորդւոյն Պաւսանեայ՝ հասին 'ի Թիկունս Դորիացւոց. հազար հինգհարիւր ասպարազէն 'ի Լակեդեմոնէ, և բիւր մի 'ի դաշնաւորաց. և ստիպեալ զՓոկէացիս տալ 'ի ձեռս զքաղաքն, ելեալ գնացին: Եւ զի երթեւեկէր 'ի ծովուն գումարտակ նաւաց Աթենացւոց՝ արգելուլ զանցս Լակեդեմոնացւոց ընդ նեղուցն Կրիսայ, վասն որոյ ոչ աներկեան թուեցաւ նոցա ճանապարհ առնել ընդ Գերանիա, ցորչափ Աթենացիք զՄեգարա և զՊեգա ունէին՝ դըժուարին գործելով զանցս Գերանիոյ անդուլ զգուշացեալ պահակերօքն, որ և անտարակոյս անանց էր յայնժամ. և խորհրդով զկայ առին 'ի Բիովտիա, և դէտակն ունէին ըղգուշագոյն ընտրելոյ իւրեանց նահանջ. ուր զի և 'ի քաղաքէն Աթենացւոց հրաւիրէին զնոսա ոմանք 'ի ծածուկ՝ յուսով բառնալոյ զռամկապետութիւն և խափանելոյ ըղշինուած երկայն պարսպին: Բայց Աթենացիք զինուորեցան քաղաքովին, և հազար այր յԱրգիացւոց, և 'ի դաշնաւորաց իւրաքանչիւր ըստ կարի՝ միահամուռ ամենքեան արք չորեքհազար. և խաղացին 'ի վերայ Լակեդեմոնացւոց՝ կարծելով փակել զնոսա անփախուստ, մանաւանդ զի կասկած երկիւղի էր լուծանելոյ ռամկապետութեան: Եկին յարեցան՝ ըստ դաշանց ուխտին, և այրուձին Թեսաղացի

'ի զօրն Աթենացւոց. բայց 'ի խառնել մարտին՝ անցին նոքա 'ի կողմն Լակեդեմոնացւոց:

ճը. Եւ եղև պատերազմ 'ի Տանագրա Բիովտացւոց, և նախճիր բազում 'ի տեղւոջն գործեալ, յորմէ յաղթողք եղին Լակեդեմոնացիք դաշնակցովք հանդերձ. և մտեալ յերկիր Մեգարայ՝ կոտորեցին զամենայն ծառատունկ նոցա, և դարձ արարին ընդ Գերանիա և ընդ Նեղուց 'ի տուն իւրեանց: Իսկ Աթենացիք յետ երկամսեայ մի աւուրց ըզկնի պատերազմին, ընդ առաջնորդութեամբ Միւռոնի մխեցան 'ի Բիովտիա, և յաղթութեամբ յԻնոփիտա՝ կալան զԲիովտիա և զՓովկիս. քանդեցին զպարիսպս Տանագրացւոց, առին պատանդս 'ի Լոկրացւոց Ոփունտիոյ, զարս հարիւր 'ի փարթամաց երկրին. և 'ի գլուխ հանեալ աւարտեցին զշինուած երկայն պարսպին: Խոնարհեցան յետ այսորիկ և Եգինացիք առաջի Աթենացւոց, քակեցին զպարիսպս իւրեանց, ետուն 'ի ձեռս զնաւս, և յանձն առին հատուցանել այնուհետև զտուրս սակեալ հարկին: Եւ զափամբ Պելոպոնեսեայ գնալով Աթենացիք և զօրավար նոցա Տոլմիդես Տոլմեան, հրձիգ արարին զնաւարան Լակեդեմոնացւոց, կալան զՔաղկիս քաղաք Կորնթացւոց. և ելեալ 'ի ցամաք՝ վանեալ խորտակեցին և զՍիկիոնացիս:

ճթ. Իսկ որ յԵգիպտոս էին Աթենացիք դաշնաւորօք հանդերձ՝ տևէին տոկային դեռ ևս, և այլ և այլ առնոյր կերպարան բաղդ զինուց նոցա: Քանզի 'ի սկզբան զօրացեալ կալան նոքա զԵգիպտոս. և յղեաց արքայ զՄեգաբազ զայր պարսիկ բազում գանձուք 'ի Լակեդեմոն՝ հաւանեցուցանել զՊելոպոնեսացիս ասպատակել յԱտտիկէ, առ 'ի բռնադատել զԱթենացիս թողուլ զԵգիպտոս: Եւ զի 'ի դերև ելին խորհուրդքն, և գանձքն այլուր վատնեցան, մնացելովքն դարձ արար և Մեգաբազ յԱսիա: Եւ արձակեաց արքայ զԶոպիրեան Մեգաբազ զայր պարսիկ զօրու ծանու յԵգիպտոս. որոյ հասեալ անդր ընդ ցամաք, խոնարհեցոյց պատերազմաւ զԵգիպտացիս. և խորտակեալ

զմարտակիցս նոցա զՅոյնս, հալածական արար 'ի Մեմփեայ. և արգել փակեաց զնոսա 'ի Պրոսոպիս կղզի զամ մի և զվեց ամիս, մինչև այլուր զջուրն դարձուցեալ և զխրամս ցամաքեցուցեալ՝ նստոյց զնոսա յերկիր. և զմեծ մասն կղզւոյն փոխեալ 'ի ցամաք երկիր, անց ոտիւք և կալաւ զայն:

ճժ. Այսպէս յետ վեցամեան պատերազմին ձախողեցան իրք Յունաց. և 'ի բազմութենէ անտի նոցա սակաւք յոյժ ընդ Լիբիա 'ի Կիւրենէ անկեալ ապրեցան: և շատ այնք եղեն՝ որ կորեան: Եւ մտին դարձեալ Եգիպտացիք ընդ լծով տէրութեան արքային Պարսից, բաց 'ի Թագաւորէն յԱմիւրտեայ՝ որ իշխէր 'ի մօրուտս աշխարհին. յոր վասն լայնածաւալ ընդարձակութեան ճահճաց՝ չկարացին մուտ գտանել Պարսիկք, և զի դոռ պատերազմողք էին բնակիչք վայրացս քան զամենայն Եգիպտացիս: Եւ Ինարոս արքայ Լիբիոյ՝ առիթ ապստամբութեան և պատերազմացս այսոցիկ, մատնութեամբ ձերբակալ լեալ կախեցաւ ըզփայտէ:

Ոչինչ գիտելով Աթենացւոց զայս ամենայն անցից պատերազմաց, խաղացին յԵգիպտոս գումարտակաւ նաւաց յիսնից՝ յիւրեանց անտի և 'ի դաշնաւորաց, փոխանակել այտի զօրն. և գային մտանէին սոքա ընդ առաջ մի Նեղոսի 'ի Մենդէսիոն: Յորոց վերայ անկեալ գունդ հետևակաց 'ի ցամաքէն, և տորմիզ նաւաց Փիւնիկեցւոց 'ի ծովէ, հարեալ խորտակեցին զբազումս 'ի նաւաց, մինչև սակաւուց մազապուր ճողոպրել: Եւ այս եղև վախճան մեծի արշաւանին Աթենացւոց և դաշնաւորաց նոցա յԵգիպտոս:

ճժԱ. Հալածական 'ի հայրենի Թագաւորութենէ Որեստէս որդի Եխեկրատեայ արքային Թեսսալիոյ՝ դիմեալ անկաւ յԱթենացիս դարձուցանել զնա յաթոռ իւր: Խաղացին Աթենացիք հանդերձ դաշնաւորօքն Բիովտացւովք և Փոկէացւովք 'ի Փարսալոն Թեսսալիոյ. և ամրացեալ նըստան անդ որչափ բանակեալ մի ընդարձակութեամբ, և

չկարէին խլոտել'ի տեղւոյն յերեսաց այրուձիոյն Թեսաղացւոց, ոչ զքաղաքն առնուլ և ոչ վասն որոյ եկեալն էին՝ գործ մի վճարել, որով ընդ Որեստեայ դարձան յետս կորակոր:

Եւ յետ ոչ բազմաց՝ հազար մի աթենացի ամբարձեալ 'ի նաւս ընդ Պերիկլեայ որդւոյ Քսանթիպպեայ 'ի քաղաքն Պեգայ՝ որ ընդ ձեռամբ նոցա էր յայնժամ, և զծովեզերբ նաւելով հասին 'ի Սիկիոն, և ելեալ 'ի ցամաք՝ խորտակեալ վանեցին զՍիկիոնացիս. և առեալ ընդ իւրեանս զԱքայեցիս՝ անցին 'ի հանդիպակողմն, և չոքան պաշարեցին զքաղաքն Ենիատ յԱկառնանիա, և չյաջողեալ առնուլ զայն՝ դարձան յերկիր իւրեանց:

ԾԺԲ. Եւ յետ երից ամաց կնքեցան դաշինք հնգամեայ խաղաղութեան, և եղև դուլ զինուց 'ի մէջ Պելոպոնեսացւոց և Աթենացւոց: Լուեալ յայնժամ Աթենացիք 'ի կռուելոյ ընդ Հելլէնս, արշաւանս եդին 'ի Կիպրոս երկերիւր նաւուք յիւրեանց անտի և 'ի դաշնաւորաց, որոց զօրավարէր Կիմոն: Ի նաւախմբէս նաւք վաթսուն անցին յԵգիպտոս՝ հրաւիրեալ յԱմիւրտեայ, որ թագաւորէր 'ի մօրուտս աշխարհին. և մնացորդ զօրուն պաշարեալ նստան զԿիտիոնիւ: Իբրև մեռաւ Կիմոն և բանակն սովէր, թողին զԿիտիոն. և նաւեալ անդր քան զՍաղամինա Կիպրացւոց՝ և պատահեալ Փիւնիկեցւոց, Կիպրացւոց և Կիւլիկեցւոց՝ հարին զնոսա ընդ ծով և ընդ ցամաք, և դարձան գումարտակաւ նաւուց՝ որ դային յԵգիպտոսէ 'ի տուն:

Յետ այսորիկ դէպ եղև Լակեդեմոնացւոց պատերազմել զսրբազան պատերազմն, որոց առեալ զմեհեան Դելփեայ դարձուցին անդրէն առ Դելփացիս. այլ իբրև նոքանք մեկնեցան, եկեալ Աթենացւոց և վերստին առեալ զայն՝ ետուն կրկին միւսանգամ 'ի ձեռս Փոկէացւոց:

ԾԺԳ. Յետ ժամանակաց այսոցիկ մինչդեռ վտարանդիք Բիովտացւոց ունէին զՈրքոմենոն, զՔերոնիա և զայլ քաղաքս Բիովտիոյ, խաղացին Աթենացիք հազար մի աս-

պարագէն զօրու և օժընդակ գնդիւ դաշնաւորաց, որոց զօրավարէր Տոլմիդէս Տոլմեան. և մխեցան զինուք 'ի Բիովտիա, կալան զՔերոնիա' 'ի գերութիւն զբնակիչսն վարեցին, և պահս 'ի նմա թողեալ մեկնեցան: Այլ 'ի գնալն նոցա ընդ Կորոնիա' հասեալ 'ի վերայ նոցա վտարանդեացն Բիովտացւոց յՈրքոմենոյ, ընդ որս և Լոկրացիք և որ տարադիրք էին յԵւբիոյ, էր զոր կոտորեցին սրով, և էր զոր ձերբակալ արարին: Թողին յայնժամ Աթենացիք զբովանդակ Բիովտիա, պայմանաւ թափելոյ զգերութիւն իւրեանց, որով դարձան մերժեալքն 'ի հայրենեաց յերկիր իւրեանց 'ի Բիովտիա' որպէս և այլքն, և կացին վերստին յինքնօրէն իւրեանց վարչութեան:

ԾԺԴ. Եւ յետ ոչ բազմաց ինչ աւուրց վտարանջեաց Եւբիա 'ի ներքոյ ձեռին Աթենացւոց. և մինչդեռ խաղայր Պերիկլէս ընդդէմ նոցա, եհաս և լուր ապստամբութեան Մեգարայ, և գուժի սպառնալեաց Պելոպոնեսացւոց արշաւելոյ յԱտտիկէ. և թէ պահանորդ զօրն Աթենացւոց կոտորեցաւ, բայց յորոց 'ի Նիսէ անկեալ ապրեցան. և թէ 'ի յոյս օգնականութեան Կորնթացւոց, Սիկիոնացւոց և Եպիդաւրացւոց՝ յայս ապստամբութիւն խրախուսեաց Մեգարա: Հապճեպ տագնապաւ ամփոփեաց յայնժամ Պերիկլէս զզօրս իւր յԵւբիոյ, և Պելոպոնեսացիք ընդ առաջնորդութեամբ Պլիստոնաքսեայ որդւոյ Պաւսանեայ արքայի Լակեդեմոնացւոց' ասպատակաւ մտին յԱտտիկէ. և սփռէին ընդ Եղևսիս և ընդ դաշտավայրն Թրիոնի յաւար և 'ի կապուտ, այլ ոչ անդրագոյն զաւերն ածելով' դարձան յերկիր իւրեանց: Իսկ Աթենացիք կրկին դարձ արարեալ ընդ Պերիկլեայ յԵւբիա, և զամենայն բնակիչս 'ի հնազանդութիւն նուաճեալ ուխտիւ խաղաղութեան, զԵստիացիս միայն մերժեցին անտի գրաւելով զերկիր նոցա:

ԾԺԵ. Մեկնեալ Աթենացւոց յԵւբիոյ' ոչ բազմաց ինչ ամաց անցեալ 'ի վերայ, կնքեցին զերեսնամեայ դաշինս խաղաղութեան ընդ Լակեդեմոնացիս և ընդ նիզակակիցս նո-

ցա՝ դարձուցանելով 'ի նոսա զՆիսէ, զԱքայիա, զՊեգա և զՏրեզենա, զորս 'ի Պելոպոնեացւոց կալեալ էր: Այլ յետ ամաց վեցից ծագեցաւ պատերազմ 'ի մէջ Սամոսացւոց և Միլետացւոց 'ի վերայ Պրիենայ՝ յորում յաղթահարեալ Միլետացիք դիմեցին առ Աթենացիս բողոքելով ընդդէմ Սամոսացւոց. ընդ Միլետացիս էր և ձեռն ոմանց 'ի Սամոսացւոց, որոց միտք 'ի յեղափոխութիւն վարչութեան քաղաքին իւրեանց կրթէին: Խաղացին Աթենացիք քառասուն նաւուք 'ի Սամոս, և զվարչութիւն կղզւոյն 'ի ռամկապետութիւն փոխեալ, առին 'ի նոցանէ մանկունս յիսուն 'ի պատանդութիւն. և նոյնչափ ևս թուով յարանց քաղաքին աւանդս 'ի Լեմնոս եդեալ, և պահս զգուշութեան կարգեալ նոցա՝ գնացին: Եւ զի ոմանց 'ի Սամոսացւոց փախստեամբ անկեալ էր 'ի ցամաք երկիր, միաբանեալ սոցա ընդ ձոխս կղզւոյն, 'ի բանի արարեալ և զՊիսութնէ Վշտասպեան զկուսակալ Սարդիկեայ, և գումարեալ գունդ մի եօթն հարիւր զօրականի՝ գիշերայն մխեցան 'ի Սամոս, և նախ ընդ ամբոխին կռուեալ զօրացան 'ի վերայ նոցա. յափշտակեալ ապա զանխուլ զպատանդս 'ի Լեմնեայ՝ յայտնապէս յետս կային յԱթենացւոց, և զպահապան զօրս նոցա և զիշխանս՝ զորս առ իւրեանս ունէին ետուն 'ի ձեռս Պիսութնեայ, և պատրաստեցան գնալ անյապաղ 'ի վերայ Միլետեայ. յաւելան 'ի վտարանջեալսն և Բիւզանդացիք:

ճժԶ. Իբրև լու եղև այս առ Աթենացիս, խաղացին նոքա վաթսուն նաւուք 'ի Սամոս. յորոց զվեշտասանսն՝ կէս մի 'ի լրտեսութիւն նաւաց Փիւնիկեցւոց 'ի Կարիա արձակեցին, և կէս մի 'ի Քիոս և 'ի Լեմնոս. և քառասուն և չորիւք միայն ընդ Պերիկլեայ առաջնորդութեամբ, որ յիշխանակիցս իւր տասներորդ էր զօրավար՝ հարան առ Տրագեայ կղզեաւ ընդ եօթանասուն նաւս Սամոսացւոց, որ 'ի Միլետեայ գային՝ քանզի միայն զինուորեալք, և յաղթողք եղեն Աթենացիք: Ընկալեալ ապա և այլ քառա-

սուն նաւս յԱթէնայ, և քսան և հինգ 'ի Քիոսէ և 'ի Լեսբեայ, և ելեալ 'ի ցամաք բազմաձեռն զօրու պաշարեցին զքաղաքն երկակի պատնիշօք, փակեալ արգելին և 'ի ծովէ: Ընդ լուր գալստեան նաւաց Փիւնիկեցւոց՝ առեալ Պերիկլեայ 'ի պաշարիչ խմբէն նաւս վաթսուն, դիմեաց 'ի Կաւնոն և 'ի Կարիա. քանզի Ստէնագորաս ելեալ 'ի Սամեայ հնգօք նաւուք երթայր առ Փիւնիկեցիս, և այլք ընդ նմա:

ճժէ. Ի ժամանակին յայնմիկ յարձակեալ Սամիացիք յեզակարծուց 'ի նաւահանգստէն 'ի վերայ անպատսպար զօրու պաշարողաց, և խորտակեալ զյառաջապահս 'ի նաւաց նոցա՝ վանեցին զընդդիմամարտս, և զաւուրս չորեքտասան տիրացեալ ծովուն, ածին մուծին անարգել 'ի քաղաքն և հանին անտի 'ի դուրս՝ զոր և կամեցան. այլ 'ի դառնալ Պերիկլեայ վերստին փակեցան յերեսաց նաւաց նորա: Յետ այսորիկ հասին և այլ նաւք Աթենացւոց ընդ Թուկիդիդեայ, ընդ Ագնոնի և ընդ Փորմիոնայ. և քսան ընդ Տրեպոլեմեայ և Անտիկլէոսի. և 'ի Քիոսէ և 'ի Լեսբեայ երեսուն նաւք: Արարին Սամիացիք ծովամարտ թեթև և աննշան. և չկարացեալ ժուժկալել երկար՝ յետ իննամսեայ պաշարման, դարձան նուաճեցան վերստին 'ի հնազանդութիւն, յանձն առեալ քակել զպարիսպս, տալ 'ի ձեռս զնաւս, յաւելուլ և պատանդս, և ընդ այսչափ ինչ ամս հատուցանել զծախս պատերազմին: Խոնարհեցան և Բիւզանդացիք ըստ նախնոյ օրինին՝ ընդ հարկաւ ծառայութեան Աթենացւոց:

ճժը. Յետ այնորիկ իբրև ոչ բազում ամք 'ի վերայ անցանէին, Կորկիւրացւոցն և Պոտիդեայն դիպեցան իրք, զորս 'ի վեր անդր պատմեցաք, և այն ամենայն՝ որ մի ըստ միոջէ պատճառք եղեն առաջիկայ պատերազմին: Եւ զոր միանգամ գործեցին Հելլէնք համացեղք ընդ համացեղս և ընդ բարբարոսին, 'ի փախստենէ անտի Քսերքսեայ մինչև 'ի սկիզբն պատերազմիս՝ բովանդակին ընդ ամս յիսուն.

յորում հզօրագոյնս ամրացեալ Աթենացիք զպետութիւն իւրեանց, և յայս ծագ զօրութեան ամբարձին: Ի միտ առին զայս Լակեդեմոնացիք, բայց չեղեն ինչ արգել, եթէ ոչ դուն ուրեք, և բազում այն էր՝ զի լռիկ հանդիսատես լինէին. քանզի չէին 'ի ժամանակին յայնմիկ այնպէս փաղփաղկոտ 'ի պատերազմ, եթէ ոչ բռնի եկեալ 'ի նոյն. է զի և առտնին կռուով խափանեալք, մինչև յայտնապէս ամբառնալ զօրութենէ 'ի զօրութիւն տէրութեան Աթենացւոց, և մօտանալ ընդդէմ դաշնաւորաց իսկ նոցուն: Որով ոչ ևս այլ կարելով տանել Լակեդեմոնացիք, պարտ համարեցան այնուհետև փութով պնդութեան ձգնել՝ ըստ մարթելոյն՝ անհետ առնել զբռնակալութիւն, և ձեռն արկին յայս պատերազմ:

Սահմանեցաւ յայնժամ առ Լակեդեմոնացիս օրինօք յայտ առնել զլուծումն դաշանց և զանիրաւելն Աթենացւոց: Եւ յղեցին 'ի Դելփիս հարցանել զաստուածն թէ յաջողեսցի՞ նոցա պատերազմն. որոց պատասխանի եղև 'ի դից անտի, որպէս աւանդեն, «Արութեամբ մարտուցելոց է յաղթութիւն՝ որոց և սատար լիցի աստուածն, քան 'ի կարդալն զնա կամ յոչ կարդալ» :

ՃԺԹ. Կոչելով 'ի ժողով վերստին զդաշնաւորսն՝ կամեցան հասարակաց քուէիւք գիտել, թէ արժա՞ն իցէ արդեօք 'ի պատերազմ գալ՝ թէ ոչ: Եւ եկին 'ի քաղաքաց քաղաքաց հրեշտակք դաշնաւորաց, և իւրաքանչիւր ըստ մտի իւրում խօսելով՝ պարտաւորս ցուցին զԱթենացիս բազումք 'ի նոցանէ, և թէ պարտ է վանել զնոսա պատերազմաւ: Իսկ Կորնթացիք 'ի սկզբան անդ շրջելով ընդ քաղաքս՝ 'ի պատերազմ զամենեսեան գրգռէին, խիթալով վասն Պոտիդեայ՝ թէ դուցէ առեալ 'ի թշնամեաց քանդեսցի. և մատուցեալ 'ի ժողովն, զի 'ի Լակեդեմոն գտան յայնժամ, խօսել կալան զայս ձև օրինակի.

ՃԻ. «Մի ևս այլ, ո՛ արք նիզակակիցք, բողոք զԼակեդեմոնացւոց կալցուք, իբրու այն թէ ոչ ինքնին անձամբ 'ի

պատերազմ յօժարին, և ոչ 'ի նոյն զմեզ այժմ արդ կոչէն այսօր: Զի որոց առաջնորդ կան, պարտ է նոցա 'ի սեպհական հաւասար յիրաւունս վայելելով՝ հսկել և 'ի վերայ հասարակաց շահուն, զի գեր 'ի վերոյք քան զամենեսեան նախապատիւ գտանին: Եւ որոց 'ի մէնջ ընդ Աթենացիս 'ի հաշտութիւն են եկեալ՝ չեն նոցա խրատուց պէտք զգոյշ 'ի նոցանէ լինելոյ. և որ միջերկրայք են մանաւանդ և ոչ ծովեզերեայք պարտին գիտել, զի եթէ ոչ ձեռն տան ծովեզերեայց, դժուարին լիցի նոցա իջուցանել զբերս երկրին, և փոխանակել ընդ որոց ընձեռէ ծով ցամաք երկրի: Եւ մի ոք զբանս իմ խոտորնակի առնուցու իմանալ, իբրու եթէ ոչ ինքեան պատշաճեալ, որում յաւուր միում քաջին խելամուտ լիցին՝ երբ առ նոսա իսկ հասցեն չարիքն, զի անփոյթ զծովեզերեայց արարին. որով ոչինչ պակաս և վասն նոցա պէտք են խորհել, և չհեղգալ ընտրել զպատերազմ քան զխաղաղութիւն: Այն խոհականի գործ է՝ 'ի չզրկելն յումեքէ՝ հանդարտեալ լռել. և արիականի՝ ընդ զրկիլն՝ գիտել 'ի խաղաղութենէ 'ի պատերազմ փոխել. և յաջողեալ 'ի նոյն՝ դառնալ կրկին 'ի թշնամութենէ 'ի հաշտութիւն գալ, մի յաջողութեամբն ամբարհաւաճել, և մի 'ի հեշտական խաղաղութեան մեղկեալ՝ ընդ հարստահարութեամբ ներգևել: Զի որ առ սէր հեշտի յուլանայցէ, բարձցին 'ի նմանէ ընդ հուպ ախորժելին այն վայելք, որոյ վասն պղերգացեալ թուլանայր: Եւ որ յաջողուածովք 'ի պատերազմի սնգանայ, չածէ նա բնաւ ընդ միտ եթէ զինի խաբուսիկ ժպրհութեան զրահեալ վարի: Բազում ինչ ձախողակի խորհրդով՝ անխորհրդագոյն ևս թշնամւոյ ընդդէմ ձեռնարկեալ յաջողեցաւ. 'ի հակառակէն՝ յոլովագոյնք իսկ յերևման անդ բարւոք նկատեալ, չարաչար կալան կատարած. զի ոչ ոք միապէս վստահութեամբ 'ի խորհուրդ և 'ի գործ գայ, այլ աներկմիտ յուսով ընտրեալ, 'ի ձեռնարկ գործոյն երկիւղիւ դեգևի:

ՃԻԱ. « Այլ մեր զոկելոցս շատ իսկ են պատճառք բա-

ղջոյ, որով և խրատամբ գամք 'ի պատերազմ. բայց յորժամ զզրկանացս խնդրեսցուք զվրէժ, 'ի դէպ ժամուն վախճան կռուոյս արասցուք: Ըստ բազում գլխոց 'ի մեր կողմն է յաղթութիւն. նախ այնու՝ զի բազմութեամբ և պատերազմական հմտութեամբ վեհագոյնք եմք քան զնոսա. երկրորդ՝ զի միաբանք միահաւանք զհետ միոյն հրամանի ընթանամք: Իսկ 'ի նաւական զօրութեան՝ որով հզօր գտանին նոքա. կազմեսցուք և մեք մեղէն նաւատորմ յընչից իւրաքանչիւր քաղաքաց և 'ի գանձուց անտի Դելփեայ և Ոլիմպեայ: Եւ արծաթոյն յանօթ առելով՝ կաշառեսցուք մեծագոյն վարձուք զնաւաստիսն նոցա զայլազգի, զի զօրութիւն Աթենացւոց 'ի վարձկանս է և ոչ յիւրեանց 'ի բնիկըս. իսկ մերս՝ յանձինս մեր քան 'ի մեծութիւն ընչից ապաստան, որով և անըմբռնելիք 'ի խայծից կաշառուց: Միով նեթ ծովամարտ յաղթութեամբ խոնարհեցուսցուք զնոսա. ապա եթէ ժուժկալեսցեն ոգորել ընդ երկար, երկարագոյն լիցի և մերս վարժ 'ի նաւակռուին. և յորժամ հաւասարեսցի հմտութիւնս մեր ընդ նոցայն, աներկբայ առաւելուցումք յայնժամ յարութեան մասին: Զի որ 'ի բնէ առաքինութիւն մեր է, անմարթ է նոցա ուսմամբ վարժից ստանալ. այլ զոր նոքայն գիտութեամբ ունին, հնար է մեզ կրթութեամբ մարզից կորզել զայն 'ի նոցանէ: Հայթհայթեսցուք և արծաթ կարեւոր 'ի լնութիւն բաւականի. զի ամենևին վատթարութիւն է, երբ չգանգատին դաշնաւորք նոցա 'ի տուրս՝ առ 'ի պնդել զլուծ ծառայութեան իւրեանց, խնայիցեմք մեք 'ի նոյն՝ 'ի փրկութիւն ազատութեան անձանց մերոց և 'ի վրէժ քինու թշնամեաց, յորոց յափշտակեալ 'ի մէնջ գանձքն արծաթոյ, զեաստու և կորըստեան մերոյ պատճառք լինիցին:

ձԻԲ. «Իցէ մեզ և այլ ճանապարհ մարտնչելոյ ընդ նոսա՝ ձեռն 'ի վտարանջութիւն դաշնաւորաց նոցա տալով, կարճելով զմուտս գանձուց՝ յորմէ է զօրութիւն նոցին, կանգնելով և ամրոցս 'ի սահմանագլուխս երկրին, և այ-

ըովք բազում հնարիւք, զորս չէ ժամու կանխել տեսանել մի ըստ միոջէ։ Զի ոչ եթէ նախանկար օրինօք պատերազմ վճարի, այլ ըստ դիպաց ընծայելոյ՝ նա ինքնին բազմահնար ճարտարի, և որ առաւել անխռովն իցէ 'ի նմին՝ աներկեան ևս գտանի. իսկ որ ցասմամբ գնայ և բարկութեամբ՝ ստէպ գթէ։ Արժան է մեզ և զայս ոչ մոռանալ, զի եթէ ընդ հաւասարազօր հակառակորդին էր մերս կռիւ 'ի վերայ սահմանաց մերոց՝ դիւրին էր արդեօք. այլ ընդ Աթենացիս է պատերազմս, ոյք ընդդէմ ուրոյն ուրոյն 'ի քաղաքանւոյ հզօրագոյնք են, և ընդդէմ միահաղոյն հասարակաց մեր ամենեցունց՝ բաւականք։ Զի եթէ ոչ ըստ ազգաց և ըստ քաղաքաց՝ աշխարհախորհ ձուլիւք միաբանութեան պատերազմ ընդ նոսա տացուք, երկպառակ գտեալ նոցա զմեզ՝ զմի մի անջան ըմբռնեսցեն։ Եւ պարտութիւնս մեր այս, զոր անհնարին է լսել, ածցէ մեզ ծառայութիւն անհրաժեշտ, ընդ որ բանիւք անգամ երկբայել ամօթ մեծ է Պելոպոնեսացւոցս, որպէս եթէ այնչափ բազմութեան քաղաքաց՝ ընդ միոյն հարստահարութեամբ կայցէ մեզ հեծել։ Ցիրաւի իցէ կրել մեզ զայս յայնժամ, և կամ առ վատութեան տանել ամօթոյն, փոխանակ զի յետնեալ գտաք 'ի նախնեաց առաքինութենէ, որք յազատութիւն զՅելլադահանին, ուր մեք և ոչ ամրապնդել անգամ զայն գիտիցեմք. և թողուցումք բռնանալ քաղաքի միոյ, որ պանծամքս կործանիչ աթոռոց բռնակալաց լինել։ Եւ անգիտանամք ամենեւին թէ զիարդ գնացս մեր այս չէ ազատ յերից 'ի ծանունց վրիպանաց՝ յանհանճարութենէ, ասեմ, 'ի մեղկութենէ և յանփոյթ յուլութենէ. և զի ոչ խորշելով ձեր յայսոցիկ՝ յաղետաւորս յայս բազմաց հասիք դուք յարհամարհոտ անտարբերութիւն, որ 'ի յաճախ վրիպելոյն՝ փոխանակէ ընդ անուան անմտութեան։

ԾԻԳ. «Բայց ո՞ր շահ զանցելոց իրաց երկար ողբալ՝ որ այժմու չօգնէ. վասն ապառնւոյն յաւէտ արժան է ճըգնել, սատարելով որում առաջի կայն. զի հայրենական է

մեզ աւանդ 'ի ջանս վաստակոց ստանալ զառաքինութիւն. և մի այլայլեսցուք զայս ժառանգական սովորութիւն, փոխանակ զի գանձուք արդ և իշխանութեամբ փոքր մի քան զնոսա առաւելեալ գտանիմք. չէ արդար որ չքաւորութեամբ ստացեալ՝ ճոխութեամբ կորնչիցի: Եւ զի 'ի բազմապատիկ պատճառացս խրախուսեալ ընթանայցէք 'ի պատերազմս. 'ի պատգամաց աստուածոյն, 'ի խոստացեալ առ 'ի նմանէ յօգնականութենէ, և 'ի հասարակաց Հելլենաց Նիզակակցութենէ, յորոց կիսոցն առ ահի, այլոց առ շահուն 'ի սոյն են յորդորեալ: Զի ոչ դուք էք՝ որ նախաձեռն 'ի կռիւ և 'ի լուծումն դաշանց գայք, զոր աստուած ինքնին 'ի տալ հրամանին 'ի պատերազմն՝ կանուխ իսկ քակեալ զդաշինս համարի. նա մանաւանդ 'ի վրէժխնդրութիւն արհամարհութեան նոցին զինիք դուք: Լուծանին դաշինք ոչ յորոց զվրէժ նոցուն խնդրիցեն, այլ յորոց կանխեալ բռնաբարիչք այնոցիկ լինիցին:

ՃԻԴ. « Եւ զի ամենուստ ամենեւին 'ի դէպ է ձեզ և պատշաճ գալ 'ի կռիւս առաջիկայ, 'ի սոյն հասարակ հաւանութենէ և մեք յորդոր ձեզ լինիմք, իբրու անվրէպ օգտակար քաղաքաց և ուրոյն առանձին մարդոց, մի յամել ուրեմն ժամանել յօգնութիւն Պոտիդէացւոց՝ սերնդոց Դորիացւոց՝ պաշարելոց յերեսաց Յոնիացւոց, որ հակառակն է նախնոյ սովորութեան, և զայլոց Հելլենաց խնդրել ըզվրէժ: Զի եթէ 'ի զրկանս հարստահարութեան կիսոց 'ի նոցանէ անփոյթ յամիցեմք, տեսեալ զմեզ այլոց համախմբեալս 'ի վրէժխնդրութիւն և դեգեւել 'ի գործ, աներկբայ ընդ հուպ զնոյն կիրս և նոքա կրեսցեն: Հա՛պա, արք Նիզակակիցք, խելամուտք միանգամ վերահաս վտանգիս և կարեւորութեան բանիցս, ընտրեցէք ձեզէն զպատերազմ, և մի առաջիկայ չարեօքս զանգիտեալ երկչոտիցէք. այլ որ անտի յաւէտ մնայուն խաղաղութեան ցանկացարուք: Զի պատերազմաւ ամրապինդ կայկայի խաղաղութիւն. ուր առ. հեշտի հանգստեան խորշել 'ի կռուոյ՝ չէ

միապէս անվտանգ: Քաղաքն այն ամբարձեալ 'ի բնաւոր տիրապետութեան խորում յԵլլադա, ամենեցուն մեզ հաւասար սպառնայ. զի 'ի հրամայելն ոմանց, զնոյն և այլոց պատրաստի տալ հրամանս: Ո՛ն, երթիցո՛ւք ապա 'ի ցածուցանել զգոռոզ բարձրութիւն նորա. և զերծեալ միանգամ 'ի մօտալուտ վտանգէն, զերծուսցուք և զՀելլէնս 'ի լծոյ ծառայութեան»:

Զայսոսիկ Կորնթացիք խօսեցան:

ձիԵ. Իբրև լուան Լակեդեմոնացիք զհասարակաց ամենեցուն զկարծիս, առաջի արարին ամենեցուն գաշնաւորաց՝ որ մերձն կային՝ տալ քուէայս, յաւագաց անտի սկըսեալ մինչև 'ի վերջինս 'ի քաղաքանւոյն. և բազումք այնոքիկ եղեն՝ որք 'ի պատերազմ մէտ գտան: Եւ յետ զայս այսպէս սահմանելոյ՝ դժուարին էր նոցա վաղվաղել 'ի կռիւ, զի անպատրաստք էին գլխովին. և համայն թուեցաւ նոցա փութալ զհետ լինել պատրաստութեան պատերազմի. յորում ոչինչ նուազ քան զամ մի յամեալ, ասպատակ եդին ապա յԱտտիկէ՝ յայտնապէս հրատարակելով զմարտ պատերազմի:

ձիԶ. Մինչ այս մինչ այն, հրեշտակութեամբ գնացին Լակեդեմոնացիք յԱթէնս բողոքով ամբաստանութեան, որում եթէ ոչ լսիցեն Աթենացիք՝ լիցի այն նոցա հզօրագոյն աւիթ պատերազմի: Երթեալ դեսպանացն պահանջէին յԱթենացւոց՝ մերժել նախ 'ի քաղաքէն զորբապիղծ յանցաւորս ընդդէմ աստուածուհւոյն, որ և սեղանակապուտ եղեանս՝ այսպիսի ինչ էր:

Կիլոն ոմն աթենացի յաղթող յՈլիմպիական մրցանս, տոհմիկ և 'ի նախնեաց անտի մեծափարթամ այր, ածեալ իւր կին զդուստր Թէագինեայ մեգարացւոյ բռնակալի, հարցեալ նորա պատգամ 'ի Դելփեայ, այսպիսի ընդունէր պատասխանի. 'Ի մեծի տօնին Արամազդայ յարձակեալ կալցէ զակառն՝ զգլուխ քաղաքին Աթենացւոց: Որոյ առեալ գունդս յաներոյ իւրմէ 'ի Թէագինեայ, և 'ի նոյն զբարե-

կամս իւր խրախուսեալ, 'ի գալ ոլիմպիական տօնից Պելո֊
պոնեսացւոց, գիմեալ կալաւ զդղեակ բերդին խորհրդով
բանակալութեան. զի մեծագոյն համարէր զայն 'ի տօնս Ա֊
րամազդայ, և ինքեան Ոլիմպիական յաղթողին պատկա֊
նաւոր: Այլ թէ յԱտտիկէ, կամ թէ այլուր տօնն այն մեծ
ասացաւ, ոչ շատ միտ եդ Կիլոն, և ոչ գուշակն պարզապէս
յայտնեալ էր զայն. զի է և այլ տօն մեծ յԱթենացիս Դիո֊
սական անուանեալ 'ի պատիւ Արամազդայ Հեզոյն, յորում
աշխարհօրէն խմբեալ նոցա արտաքոյ քաղաքին, նուիրեն
բազումք ոչ զոհս սպանդից, այլ ըստ օրինաց երկրին՝ անա֊
րիւն նուէրս. կարծելով Կիլոնի քաջ հասու մտաց պատ֊
գամին՝ յանդգնեցաւ յայդ գործ: Զայս զգացեալ Աթենա֊
ցիք, խուժեցին անդր ազգախումբ բազմութեամբ 'ի գիւ֊
ղօրէից և յագարակաց, և նստեալ պաշարեցին զամրոցն:
Իբրև երկարէր պաշարումն, և խոնջք տաղտկացեալ Ա֊
թենացիք սկսանէին սորսորել գնալ բազումք 'ի բաց, զպահ
զգուշութեան բերդին ինունց իշխանաց յանձն արարին,
ինքնօրէն հրաման տալ զոր և արժան դատեսցին. զի բա֊
զում ինչ իրք վարչութեան աշխարհին յայնժամ 'ի ձեռն
սոցա կատարէր: Իբրև պաշարեալքն ընդ Կիլոնի՝ 'ի չգոյէ
կերակրոյ և ջրոյ սովորեալ նեղէին, փախուցեալ Կիլոն
հանդերձ եղբարբն ապրէր. և մնացելոցն պնդագոյն ևս
փակեալ՝ մինչև ոմանց իսկ սովամահ լինել, աղաչաւորք
նստան նոքա առ բագնաւ մեհենի միջնաբերդին: Տեսեալ
զոսսա պահակերացն Աթենացւոց թէ մեռանին 'ի մեհենի,
խոստմամբ չառնելոյ նոցա ինչ չար, ձեռս տուեալ հանին
արտաքս և կոտորեցին զամենեսեան և զապաւինեալս 'ի
բագին Մեծարոյ դիցուհւոյն՝ անդէն առ ետեղ սատակե֊
ցին: Եւ 'ի գործոյ աստի անարժանութեան ընդդէմ աս֊
տուածուհւոյն՝ ընկալան զանուն ժանտագործ սեղանա֊
կապտից ինքեանք և զաւակք նոցա յետ նոցա: Մերժեցին
զամբարշտեալս Աթենացիք. հալածեաց զնոսա ապա և
Կղէոմէն լակեդեմոնացի ձեռնտուութեամբ երկպառակելոյ

ժողովրդեան յԱթէնս. զկենդանիս 'ի բաց վարեալ, և զմեռելոց բրելով զոսկերոտին' եւ 'ի դուրս ածալ: Բայց յետ ժամանակաց կրկին դարձան տարագրեալքն, և 'ի յազգատոհմէ անտի նոցա դեռ ևս գտանէին 'ի քաղաքին:

ճիէ. Այս էր մեհենազերծ ամբարշտութիւն Աթենացւոց, զոր պահանջէին Լակեդեմոնացիք յանձանց 'ի բաց սրբել. նախ 'ի վրէժխնդրութիւն դից, և երկրորդ զի գետէին զՊերիկլէս Քսանթիպպեան 'ի մայրենի զարմէն անիծիցն հաղորդ. և խորհէին անկմամբ նորա, դիւրեաւ ևս յիրաւախոհութիւն գալ ընդ Աթենացիս: Եւ ոչ այնչափ ինչ ընդ անկումն նորա յուսային, որպէս յարուցանել ընդդէմ նորա 'ի քաղաքին սատան հակառակութեան, իրու եթէ ոչ սակաւ 'ի պատճառս նզովից նորա լիցէ պատերազմս այս: Քանզի յոյժ զօրաւոր էր յայնժամ այրն, և գլուխ իշխան վարչութեան և յամենայնի հակառակորդ Լակեդեմոնացւոց, որ չթողլով տեղի հաշտութեան' ածէր շարժէր զԱթենացիս 'ի կռիւ:

ճիը. Խնդրեցին փոխանակաւ և Աթենացիք 'ի Լակեդեմոնացւոց սրբել և զիւրեանց սրբապիղծ մեղանս ընդդէմ Տենարեայ, զի քարշեալ հանին նոքա երբեմն 'ի Տենարոն 'ի մեհենէն Պոսիդոնի զիլոտս զաղերսաւորս աստուածոյն և 'ի մահ ետուն, յորոց 'ի պատճառս հաւատան լինել և մեծի սասանութեան Սպարտայ:

Խնդրեցին դարձեալ մաքրել և զմեղանագերծ յանցանս ընդդէմ Պղնձատաճար մեհենի դիցուհւոյն, որ և եղև այսպէս: Յորժամ Պաւսանիաս լակեդեմոնացի յառաջնում անդ նուագին' յիշխանութենէ անտի իւրմէ յԵլլեսպոնտոս' յետս կոչէր 'ի Սպարտա, և դատեալ արձակէր' ոչ ևս այլ իշխանութեամբ յղելով 'ի ժողովրդենէ, ինքնին նա գլխովին կալեալ նաւ մի պատերազմիկ յԵրմիոնայ, և առանց ինչ խորհրդոյ Լակեդեմոնացւոց, պատճառելով զպատերազմ հելլենական' դարձ առնէր յԵլլեսպոնտոս, այլ արդեամբ 'ի գործ յաջողութեան խորհրդոց իւրոց ընդ

արքայի, յոր և կանուխ՝ ցանկութեամբ Թագաւորելոյ 'ի Յունաստան, ձեռն արկեալ էր. և այս լինէր առաջին վատակ երախտեաց նորա առ Թագաւորին, և սկիզբն գործոց իւրոց այնուհետև: Զի յառաջնում անդ գալստեանն յետ դարձին 'ի Կիպրեայ՝ յարձակեալ կալաւ զԲիւզանդիոն 'ի Մարաց, և գտեալ 'ի քաղաքին զոմանս 'ի մերձաւորաց արքայի և յազգանւոյն, արձակեաց զնոսա առ արքայ զանխուլ յայլոց դաշնաւորաց, զոյց հանեալ թէ փախըստեամբ զերծան նոքա, յորում էր և ձեռն Գոնգիլեայ երետրացւոյ, ում յանձն էր Բիւզանդիոն և գերութիւն Մարաց. և միջնորդաւ առնս յղեաց Պաւսանիաս նամականի առ արքայ, որպէս գտաւ յետոյ ուրեմն օրինակ զայս.

« Պաւսանիաս զօրավար Սպարտացւոց, արձակեմ 'ի շնորհս երեսաց քոց զսոսա զգերեալս զինուք. և խորհուրդ մի այսպիսի ունիմ 'ի մտի, որ եթէ հաճոյ իցէ և քեզ, տացես ինձ զդուստր քո կնութեան և ես արկից ընդ քոյով իշխանութեամբ զՍպարտա և զՀելլէնս. և կամելովդ քո՝ գիտեմ զիս 'ի կատարումն գործոյս բաւական: Եթէ ինչ մի յայսցանէ հաճոյական քեզ թուիցի, արձակեա զայր հաւատարիմ 'ի ծովեզրն կոյս, յորոյ 'ի ձեռն բանագնաց լիցուք այսուհետև »:

ՃԻԹ. Այս էին առա բանք թղթոյն. ընդ որ զուարճացեալ յանձն իւր Քսերքսէս, յղեաց անդէն զԱրտաբազ Փառնակեան 'ի ծովեզերեայս՝ հրաման տուեալ նմա առնուլ զկուսակալութիւն Դասկիլեայ, հեռացուցեալ անտի զՄեգաբատ իշխան տեղւոյն: Ետ և գիր 'ի պատասխանի թըղթոյն Պաւսանեայ, հաստուցանել զայն նմա վաղվաղակի 'ի Բիւզանդիոն, ցուցանելով նմա և զկնիքն արքունի. և եթէ խնդրեսցէ ինչ 'ի նմանէ Պաւսանիաս 'ի սատարութիւն խորհրդոյ իւրոց, փութով հաւատարմութեամբ 'ի գլուխ տանել զամենայն: Հասեալ Արտաբազայ 'ի դէմ եդեալ տեղին, արար կատարեաց զամենայն ըստ հրամանին. և հա-

տոյց 'ի ձեռս Պաւսանեայ զթուղթն արքունի. որոյ պատճէնն էր այս.

« Այսպէս ասէ արքայ Քսերքսէս առ Պաւսանիաս. վասն արանցն զորս արձակեցեր առ իս 'ի Բիւզանդիոնէ յայնկոյս ծովուն ապրեալս, կացցէ մնասցէ յիշատակ երախտեացդ քոց 'ի գիրս յիշատակաց տանն արքունի յաւէժական. հաճեցայ և ընդ բանսդ: Մի՛ դադարիր ապա զտիւ և զգիշեր՝ մինչև 'ի գլուխ հանցես զգործդ, զոր խոստանասդ: Ոչ ոսկւոյ և ոչ արծաթոյ ծախք խափան լիցին իրիդ. և ոչ բազմամբոխ զօրաց պէտք, ուր և կարևոր դատեսցին: Այլ ընդ Արտաբազայ ընդ առն հաւատարմի՝ զոր առաքեցի առ քեզ, գիտասցես խօսել և գործել զիմոցս և զքոյոց, որ ինչ պատշաճն իցէ և օգտակար միապէս հաւասար երկոցունցս »:

ԾԼ. Ընկալեալ զայս գիր Պաւսանիաս, որ յառաջնմէ իսկ առ զօրավարութեամբն իւրով 'ի Պղատէա՝ մեծապատիւ առ Հելլէնս էր, ամբարհաւաճեալ յոյժ, ոչ ևս այլ ըստ հայրենի կարգին վարել կամէր. և ելեալ 'ի Բիւզանդիոնէ՝'ի հանդերձս և 'ի տարազ մեդացի ձևելով զանձն՝ գնայր ընդ Թրակիա, տանելով յառաջոյ զինակիրս մարս և եգիպտացիս: Ըստ պարսկական օրինի տայր պաշտել իւր սեղան. և ոչ ևս այլ կարելով քօղարկեալ պատրուակել զխորհուրդս մտաց իւրոց, փոքումբք և դուզնաքէիւք անգամ երևեցուցանէր կանուխ՝ զոր յաւուր միում ունէր գործել: Դժուարամատոյց լինէր այնուհետև և դժպհի՝ ընդ ամենեսին միօրինակ խրոխտանօք գնայր, մինչև ոչ ումեք համարձակել մերձենալ առ նա, որով և գլխովին աւիթ լինէր անցանելոյ դաշնաւորաց 'ի կողմն Աթենացւոց:

ԾԼԱ. Ամենայնի այսոցիկ լուր 'ի Լակեդեմոն հասեալ, ըստ առաջնոյ նուագին կոչեցին զնա յետս. զի այս երկիցս առանց հրամանի 'ի նաւս Երմիոնացւոց ծովագնաց լինէր, և զի 'ի նմին տարօրինակ գնացս յամէր: Պաշարեալ նորա յԱթենացւոց 'ի Բիւզանդիոն և բռնադատեալ թողուլ

մեկնել 'ի քաղաքէն, ոչ 'ի Սպարտա դառնալով՝ 'ի Կոլոնիա Տրոյացւոց հաստատէր բնակութեամբ։ Եւ իբրև լուեալ 'ի Լակեդեմոն, զի ոչ միամիտ խորհրդով դեգերի նա վայրապար 'ի տեղիսն, և զի բանագնաց ընդ բարբարոսս լինի, ոչ ևս այլ երկարեալ Պարետացն՝ նուիրակ զհետ նորա արձակեցին և զսկիւտալ՝[1] պատուէր տուեալ նմա գալ երևել նոցա ընդ նուիրակին, ապա թէ ոչ՝ կայ մնայ նմա պատերազմ յերեաց Սպարտացւոց։ Ոչ կամեցաւ Պաւսանիաս կարծիս անգամ կասկածանաց տալ, ակն ունելով 'ի ձեռն կաշառաց ցրուել զամբաստանութիւնն, այս երկրորդ անգամ դարձ արար 'ի Սպարտա։ Հրամանաւ Պարետաց արկեալ նախ 'ի բանտ, զի իշխանութիւն է նոցա և 'ի վերայ թագաւորաց, զերծաւ անտի ապա հնարիւք և մատեաւ 'ի պատասխանատրութիւն՝ որոց վասն ամբաստան լինէին զնմանէ։

ՃԼԲ. Ոչ մի ինչ յայտնի հաւաստիք 'ի ձեռս էին՝ ոչ Սպարտացւոց, ոչ թշնամեաց նորա և ոչ համայն իսկ քաղաքին, յոր յեցեալ կարէին պատուհասել զայր արքայազն, 'ի պատիւ մեծի աւագութեան յայնժամ. քանզի խնամակալ կայր նա և յանձանձիչ Պլիստարքեայ արքայի մանկան, որդւոյ եղբօր իւրոյ Լէոնիդեայ։ Այլ արտաքոյ օրինաց գնացիւքն և նախանձու նմանութեամբ բարբարոսաց, և ապարթանելով քան զիւր պայման՝ ոչ սակաւ կասկածաւոր լինէր նա։ Ի քննութիւն այլոց գործոց նորա մատուցեալ՝ եթէ երբէք հակառակ ինչ օրինաց աշխարհին յանցուցեալ իցէ, զի 'ի նուիրեալ յեռոտանին 'ի Հելլենաց երբեմն 'ի

[1] Սկիւտալ՝ գաւազան գլանաձև էր երկայն, որոյ հաւասարն յանձըն լինէր զօրավարի իշխանութեամբ արձակելոյ արտաքոյ աշխարհին, և միւսն առ Պարէտս կայր. 'ի կամելն առաքել գաղտնի հրամանս, ծածկեալ սպիտակ փոկով զգաւազանն՝ գրէին 'ի նմա ընդ երկայն գլանն. և 'ի պարզել փոկոյն խառնակէր գրութիւնն, և զօրավարին էր միայն օգնականութեամբ առ նմա եղելոյ սկիւտալին հանել զիմաստս գրոյն։

Դելփիս, յերախայրիս յաւարէ անտի Մարաց՝ համարձակէր արձանագրել յիւր անուն զտողսն

# ՊԱՒՍԱՆԻԱՍ
# ՆԱԽԻՇԽԱՆ ԱՌԱՋՆՈՐԴ
# ԶՕՐՈՒՆ ՀԵԼԼԵՆԱՑ
# ԽՈՐՏԱԿԵԼՈՎ ԶԶՕՐՈՒԹԻՒՆ ՄԱՐԱՑ
# ՆՈՒԻՐԷ ԶԱՅՍ
# Ի ՅԻՇԱՏԱԿ ԶՕՆԻ ՓԵԲԵԱՅ։

Եւ ետուն յայնժամ 'ի բաց քերել վաղվաղակի զտողսն Լակեդեմոնացիք, և հրամայեցին արձանագրել զանուանս քաղաքացն՝ որք աշխարհօրէն հարին զբարբարոսն, և եդին զայն 'ի յիշատակ։ Եւ համարեցաւ այս 'ի յանցանս Պաւսանեայ. մանաւանդ 'ի պայմանի՝ յորում էրն նա 'ի ժամանակին, նմանագոյնս թուէր նա ըստ առաջարկեալ խորհրդոց իւրոց գործել։ Ի վեր ել և դաւագիր ինչ կամակցութիւն նորա ընդ Իլոտս, որ և էր ըստ այսմ օրինակի. խոստանայր նա նոցա ազատութիւն և ուրոյն վարչութիւն, եթէ միաբանեալ ընդ իւր՝ ձեռն տայցեն նմա 'ի լրումն խորհրդոց իւրոց։ Սակայն և այնպէս ոչ 'ի դէպ համարեցան Լակեդեմոնացիք 'ի հաւատ ամբաստանութեան Իլոտաց՝ անսովոր ինչ և նոր ընդդէմ Պաւսանեայ վճռել. այլ ըստ սովորութեան օրինաց գնալով, մի առանց աներկբայ ստոյգ հաւաստեաց, երագել 'ի դատապարտութիւն առն սպարտացւոյ։

Յետոյ ուրեմն ապա, որպէս պատմեն, Արգիլիոս ոմն անուն՝ մանուկ նորա տարփաւոր և մտերիմ առ նա, որ ունէր տանել զվերջին թուղթ նորա առ Արտաբազ, մատն եղև նմին, որ յերկբայս լինէր զտեառնէն, զի ոչ ոք 'ի թղթատարաց սուրհանդակաց նորա դառնայր յետս. հնարեաց արար կնիք սուտ, զի 'ի դերևել կարծեաց երկիւղին, և 'ի խընդրել Պաւսանեայ զգիրն՝ փոփոխութիւն ինչ 'ի նմա առնե-

լոյ պատճառաւ, մի՛ ելցէ բանն 'ի վեր։ Ելոյծ զկնիք համականւոյն՝ յորում կասկածէրն այնպիսի ինչ գոլ ընդդէմ իւր, և եգիտ 'ի նմա զհրաման սպանութեան իւրոյ։

ԾԼԳ. Իբրև 'ի վեր եհան Արգիլլիոս զգաղտնիս համականւոյն, և ևս հաստատեցան Պարէտք 'ի ստուգութեան իւրին. այլ կամելով անձամբ իսկ ականջալուր բանից Պաւսանեայ լինել զայնմանէ, 'ի ձեռս առին զպատանին՝ պատճառելով նորա աղերսարկու 'ի Տենարոն երթալ. յորում կազմեալ նորա իւր հիւղ բնակութեան, և դուզնաքեայ անջրպետաւ զատուցեալ 'ի կրկնեակ խշտիս, 'ի ներքնումն թագոյց զոմանս 'ի Պարէտաց. և իբրև դայր առ նա Պաւսանիաս՝ հարցանել զպատճառս աղաչաւոր առ դիս գալոյն, բողոք կալաւ Արգիլլիոս լու 'ի լու Պարէտացն զգրելոյն 'ի նմանէ, և զայլոց մի ըստ միոջէ մանր զպայտնութեանց. և թէ բնաւ չէր նորա թերացեալ 'ի սպասուէ ծառայութեան արքայի, և հասարակորդ զնա արար բազմաց 'ի պաշտօնէից իւրոց՝ չխղճելով տալ զնա 'ի մահ։ Ոչ ստելով Պաւսանեայ զայս ամենայն, աղաչէր զայրն չցասնուլ ընդ եղեալսն և յորդորէր զնա ելանել 'ի սրբավայրէ մեհենին, և երթալ 'ի բաց անյապաղ և չլինել գործոյ նորա խոչ ընդ ոտն խափան։

ԾԼԴ. Լուեալ Պարէտաց ճշգրտիւ զամենայն՝ ելին մեկնեցան անտի. և յետ հաստատութեամբ 'ի վերայ հասանելոյ իրացն, պարապով զհետ լինէին 'ի քաղաքամիջի անդ ձեռն 'ի թագաւորն արկանել։ Եւ պատմեն, եթէ յորժամ ձեռն արկանել 'ի նա կամէին յուղւոջ, տեսեալ նորա զերեսս միոյ ուրուք 'ի Պարէտաց՝ որ յառաջոյ ընթանայր, և գուշակեալ զպատճառս առ նա մերձենալոյն, և 'ի նշանացի առնել նմա այլոյ ուրուք Պարէտի առ մարդասէր գթոյն, ընթացեալ նա անկաւ 'ի Պղնձատաճար Դիցուհւոյն՝ որ չէր հեռի 'ի տեղւոջէն։ Եւ մտեալ յերկրի անդ սրբում կալուածոյ մեհենին, ամփոփեցաւ 'ի բնակութիւն ուրեք անձուկ, զի մի՛ 'ի բացօթեայս տառապեսցի արտաքոյ։ Եւ

ոչ և այլ հետամուտ եղեն նմա յայնժամ Պարէտքն. բայց ապա զՃեղուն յարկին և զբնակութեան նորա 'ի բաց աւին, և որ ճնարգել 'ի ներքս զնա փակեալ՝ կալան զամենայն զմուտս և զել նորա սալու պաշարելով. և իբրև իմացան թէ մերձ է նա 'ի վախճան մահուն, հանին զնա 'ի մեհենէն՝ դեռ ևս շունչ յանդամս նորա, որ և ընդ ելանելն փըչեաց զոգին: Խորհէին նախ զդիակն նորա 'ի Կեադաս արկանել՝ յոր սովոր էին զեղեռնաւորս ամալ. այլ բարւոք թուեցաւ ապա ոչինչ հեռի անտի ընդ հողով ծածկել: Յետոյ ուրեմն պատգամ 'ի Դելփեան դից ընկալան Լակեդեմոնացիք, փոխադրել զգերեզման նորա 'ի տեղին յորում մեռաւն. որ և ցայժմ կայ յանդաստակ մեհենին, յայտարար արձանագրութեամբ 'ի սեան կանգնելոյ. և զի գործ սեղանակապտութեան էր այս, հրամայեցաւ նոցա փոխանակ միոյ՝ կրկին հատուցանել մարմինս Պղնձատաճար Դիցուհւոյն. և նոցա երկուս անդրիս ձուլեալ պղնձիս, իբրու փոխանակ Պաւսանեայ՝ նուիրեցին զայնոսիկ աստուածուհւոյն:

ՃԼԵ. Իսկ Աթենացիք՝ և դից իսկ դատաստանաւ, 'ի սեղանազերծ եղեալ զգործն զայն գրելով, պահանջէին խստիւ 'ի Լակեդեմոնացւոց, 'ի բաց սրբել յանձանց զմեղանսն: Փոխանակաւ և Լակեդեմոնացիք հրեշտակութեամբ բողոք կալեալ յԱթէնս, եթէ 'ի նոյն յանցանս մարական գոռոզութեան ըմբռնեալ էր և նա ինքն Թեմիստոկլ, որպէս 'ի հարցափորձ քննութենէ Թագաւորին Պաւսանեայ յայտնի եղև, պահանջէին զնոյն պատուհաս կապել և նմին: Հաւանեցան ընդ այն Աթենացիք, և զի Թեմիստոկլ խեցեկոյտ վճռաւ յաքսորս էր, զբնակութիւն իւր ունելով յԱրգոս՝ յաճախելով և 'ի Պելոպոնէս և այլուր, արձակեցին միաբան ընդ Լակեդեմոնացիս խնդրակս զկնի, պատուիրանաւ ձերբակալ առնելոյ զնա՝ յորում վայրի և գտցեն:

ՃԼԶ. Բայց Թեմիստոկլեայ նախազգացեալ հրամանին, փութացաւ եթող զՊելոպոնէս և փախեաւ 'ի Կորկիւրա,

որոց երբեմն բարերարեալ էր: Այլ Կորկիւրացիք երկուցեալ յերեսաց Լակեդեմոնացւոց և Աթենացւոց՝ ունելոյ զնա առ իւրեանս, առեալ ածին զնա 'ի հանդիպակաց ցամաք երկիր. և Թեմիստոկլէս հալածական անդադար 'ի հետամտից անտի խնդրակաց, առ չոտալ տագնապին դիմեալ անկաւ առ Ադմետ արքայ Մոլոսսաց՝ որ չէր նմա բարեկամ: Եւ զի ոչ էր Թագաւորն յարքունիս, աղերսարկու առ կին նորա ընծայեցաւ. և ուսաւ 'ի դշխոյէն՝ կալեալ զտղայ մանուկ արքայորդին 'ի գիրկս, նստել առ Թերափն. և իբրև ոչ յետ բազմաց գայր մտանէր Ադմետ, ծանոյց Թեմիստոկլ զանձն իւր թէ ո՞ ոք էր, և ասէր. «Զի թէպէտ սատան կացի ես երբեմն խորհրդոց քոց առ Աթենացիս, այլ չէ արժան քինախնդիր լինել հալածելոյն, և կարիյոյժ տկարագունին 'ի ժամուս հատուցանել չարիս, զի վեհ է 'ի հաւասարից առ հաւասարս վրէժխնդրութիւն. և թէ 'ի տոյժ չահու օգտիդ և ոչ 'ի փրկութիւն քո հակառակեցայ ես յայնժամ. որ եթէ տաս զիս արդ 'ի ձեռս խնդրողաց անձին իմոյ, 'ի կենաց է զիս զրկել»: Եւ յաւելոյր պատմել թէ յորո՞ց և վասն ո՞յց պատճառաց հալածական երթայր: Եւ լուեալ արքայի զայն ամենայն, զաջ խաղաղութեան մատոյց նմա. և յարոյց զնա ընդ արքայորդւոյն իւրոյ, զոր առեալ նորա 'ի գիրկս՝ նստէր. և էր այս 'ի կրօնս՝ աղնուագոյն ձև աղերսարկու լինելոյ:

ճլե. Յետ փոքու ինչ հասեալ խնդրակացն Լակեդեմոնացւոց և Աթենացւոց 'ի վերայ, և թախանձէին յոյժ զարքայ տալ 'ի ձեռս զայրն. այլ նորա ոչ կամելով մատնել զաղերսարկուն՝ 'ի խնդրել նորա երթալ առ արքայից արքայն, յղեաց զնա ընդ ցամաք մինչև 'ի միւս ծով 'ի Պիւդնա 'ի քաղաք Աղէքսանդրու: Եւ գտեալ անդ Թեմիստոկլեայ նաւ մի վաճառական՝ որ գնայր 'ի Յոնիա, եմուտ 'ի նա. և 'ի ճանապարհին հողմակոծեալ վարեցաւ մօտ 'ի գումարտակ նաւացն Աթենացւոց, որ պաշարմամբ նստէին զՆաքսաւ. և զի անծանօթ էր Թեմիստոկլ որոց 'ի նաւուն էին,

երկուցեալ յայտնեաց նա զանձն իւր նաւապետին, և թէ առ ի՞նչ փախստական գնայր. և եթէ ոչ փրկէ նա զինքն, մատն լիցի նմա, ասէր, իբրու կաշառակուրծ ձեռնտուի փախստէին. և թէ զգուշագոյն է չթողուլ զոք ելանել'ի նաւէն, մինչև ներեսցեն հողմունք 'ի ծովէն, յորում յաջողելով արժանի շնորհս սմին կալցի: Եւ նաւապետին անսացեալ բանից նորա, արար որպէս և ասացն. և զտիւն ողջոյն և զգիշերն խարիսխ արկեալ դադարէր 'ի վերոյ քան զբանակն Աթենացւոց, մինչև ամբարձեալ անտի հասին յԵփեսոս: Եւ վարձահատոյց նմին լինէր Թեմիստոկլէս յընչից անտի իւրոց յաւանդ եդելոց 'ի ծածուկ յԱթէնս և յԱրգոս, զորս ընդ ձեռն բարեկամաց իւրոց ընդունէր: Եւ ճանապարհորդեալ 'ի միջերկրայս առաջնորդութեամբ պարսկի ուրուք, արար գիր առ արքայ Արտաշէս որդի Քսերքսեայ, որ 'ի սոյն աւուրս յաջորդէր զհայրն. և էր պատճէն թղթոյս այս.

«Գամ ես Թեմիստոկլ առ քեզ, որ աւելի քան զբնաւ իսկ Հելլենս՝ չարիս տան քում հասուցի, ցորչափ զզէնս հօր քո վանել յինէն բռնադատեցայ. բայց յորժամ յանքոյթ աներկևանութեան էս, և նա 'ի վտանգի էր 'ի նահանջել իւրում, բազմօք նմին երախտաւոր գտայ. որով և փոխարինի վաստակոցս արժանաւորիմ: Եւ յուշ ածէր նմա, թէ ո՛րպէս ծանուցեալ և ազդ արար արքային զխորհուրդ նահանջին Յունաց 'ի Սալամինայ, և թէ արգել խափանեաց չքակել զկամուրջս, զոր ստութեամբ համբաւեալ էր: Եւ այժմ արդ հալածական 'ի Հելլենաց՝ վասն առ քեզ բարեկամութեանս, կամիմ այլ ևս բարեաց լինել քեզ պատճառ: Դուլ արա ինձ տարի մի, և անձամբ պատմեցից՝ վասն որոյ գամս առ քեզ»:

ՃԼԸ. Զարմացաւ թագաւորն, որպէս պատմեն, ընդ մեծախորհուրդ այրն. և հրամայեաց առնել այնպէս, որպէս և խնդրէրն: Իսկ նորա ըստ պայմանադրի աւուրցն՝ զոր խոստացաւ, ուսեալ զպարսկական բարբառն, որչափ

ինչ և կարող լինէր, և զօրէնս սովորութեան աշխարհին, 'ի լրանալ ամին՝ եկն յանդիման եղև արքայի. և մեծացաւ անձն նորա առ արքայի՝ որպէս ոչ ումեք 'ի Հելլենաց հանդիպեալ շնորհին. ոչ միայն վասն կանուխ արժանեացն, և յուսոյ ակնկալութեան՝ զոր մատուցանէր նա արքայի՝ հնազանդեցուցանել նմա զազգն Հելլենաց, այլ յաւէտ վասն մեծի հանճարոյ իմաստութեան նորա 'ի փորձոյ տուելոյ: Եւ էր 'ի Թեմիստոկլէս զօրութիւն գերաբուն անզուգական ամենևին, և կարի իսկ զարմանալոյ արժանաւոր. զի իւրովք բնիկ սեփհական նրբամտութեամբ, և ոչ կանուխ կամ անագան ուսմամբ կրթութեան՝ 'ի սուղ խելամտութեան անդ իւրում՝ կեղակարծից դիպաց դատաւոր էր ստոյգ, և ապառնեաց գաղտնեաց գուշակ խորատես. որոց առձեռն էր՝ բաւական էր յառաջնորդութիւն. իսկ որոց անփորձ՝ չԹերանայր երբէք և 'ի նոսա յուղիղ դատաստանէն: Զբարւոյ և զչարէ՝ չև 'ի տեսիլ եկեալ նոցուն, յառաջնիս կանխատես գուշակ լինէր. միանգամայն ասելով՝ 'ի բնէ զօրաւոր ճարտարութեամբն, և սակաւուք 'ի փորձոյ կրթութենէ՝ գերազանց գտաւ նա 'ի գիւտս հնարից, և արագ 'ի կատարումն նոցին:

Հիւանդացեալ պակասեցաւ Թեմիստոկլէս 'ի կենաց. Թէպէտ այլք ասեն թէ ինքնին դեղ անձամբ առեալ մեռաւ, անհնարին գիտելով զլրումն խոստման իւրոյ՝ զոր խոստացաւ Թագաւորին: Եւ գերեզման նորա կայ 'ի Մագնեսիա Ասիացւոց 'ի հրապարակամիջի անդ, զի իշխան էր նա երկրին՝ շնորհելոյ նմա յարքունուստ: Մագնեսիա տայր նմա զհաց իւր, ամի ամի բերելով յիսուն տաղանդս արծաթոյ. Լամփսակոն զգինին՝ որ գինաւէտն համարէր յայնժամ, և քաղաքն Միուս զխորտիկս համագամացն: Եւ ասեն՝ ըստ պատուիրելոյ նորա, փոխադրեալ ազգականացն զոսկերս մարմնոյն 'ի տուն իւր. և զանխուլ յԱթենացւոց աւանդեալ յԱտտիկէ, զի չէր օրէն հողոյ տալ զդիակն տարագրելոյ մատնտուի հայրենեաց: Այսպէս զրաւեցան 'ի կե-

նաց Պաւսանիաս լակեդեմոնացի և Թեմիստոկլէս աթենացի, արք հոյակապք առ Հելլենս ժամանակին:

ՃԼԹ. Յառաջնումն անդ դեսպանութեան զայսոսիկ պատուէրս տուեալ Լակեդեմոնացւոց, և ընկալեալ 'ի նոցանէ փոխանակաւ՝ վասն մերժելոյ զանիծապարտ սեղանակապուտս, անագան ուրեմն յետ այլևայլ բանագնացութեանց, եկին 'ի խնդիրս' 'ի բաց մեկնելոյ Աթենացւոց 'ի Պոտիդեայ, և թողլոյ զԵգինէ յիւրում ազատ վարչութեան. և քան զամենայն փութային ազդ առնել նոցա յայտնապէս, զի եթէ կամ էր նոցա խորշել 'ի մարտէն՝ ջնջեալ խափանել զվճիռս տուեալս ընդդէմ Մեգարացւոց, յորում հրաման էր նոցա մի մտանել 'ի նաւահանգիստս յիշխանութեան Աթենացւոց, և մի 'ի հրապարակս վաճառուց նոցա յԱտտիկէ: Ոչ լսելով առաջարկութեանց այսոցիկ Աթենացիք և ոչ զվճիռն խախտելով՝ ամբաստան զՄեգարացւոց եղեն, եթէ ընդդէմ հակառակ օրինաց վարեն նոքա զերկիր մեհենական 'ի սահմանս նոցա հասարակաց, և թէ ձեռն տան յապստամբութիւն ստրկաց, ընդունելով զգնացականս 'ի նոցանէ: Եւ 'ի վերջէ ուրեմն հասեալ 'ի Լակեդեմոնեայ Հռամփիաս, Մելեսիպպոս և Ագեսանդրոս իբրու 'ի վախճան պատգամաւորութեան, ոչ ըստ առաջնոյ սովորութեան խօսէին, այլ թէ կամք են Լակեդեմոնացւոց պահել զխաղաղութիւն, միայն զի ազատ թողցին Հելլենք յիւրեանց վարչութեան: Ի ժողով գումարեալ Աթենացիք, և առաջի արարին տալ իւրաքանչիւր զիւր վարկս կարծեաց. և հաճոյ թուեցաւ ամենի ժողովոյն, զամենայնէ միանգամայն խորհուրդ 'ի մէջ առնուլ և տալ զպատասխանին: Բազումք յառաջ մատուցեալ տային զիւրեանց քուէս, և 'ի կրկին հատուցան կարծիս հաւանութեան. կիսոցն՝ թէ պարտ է 'ի պատերազմ գալ, և այլոց թէ արժան է բառնալ 'ի միջոյ զամենայն կրճիմն խափանարար խաղաղութեան, և ջնջել զվճիռն: Մատուցեալ յայնժամ Պերիկլէս Քսանթիպպեան, այր մեծանուն յԱթենացիս ժամանակին, հզօր

'ի բան և 'ի գործ, խորհուրդ առաջի արար նոցա օրինակ զայս:

ձԽ. « Ի սոյն միտս եմ ես, և միշտ 'ի սոյն կամս, ո՛ Աթենացիք, չտալ տեղի Պելոպոնեսացւոց. թէպէտ և գիտիցեմ թէ ոչ նովին եռանդեամբ՝ որով 'ի մարտ մղին մարդիկ, նովին և հանապազորդեալ հանդիսանայցեն 'ի նոյն արդեամբք, այլ ըստ ելից իրացն և փոփոխեն զմիտս. սակայն տեսանեմ, թէ հարկ է ինձ զնոյն հաւասար խորհուրդ և այսօր դնել ձեզ առաջի. բայց և 'ի ձէնջ հաւանելոցն 'ի նոյն՝ իրաւամբ զայս պահանջեմ. զի եթէ և վրիպեսցիմք իսկ 'ի յուսոյս ակնկալելոյ՝ բայց և այնպէս հասարակաց միաբան հաւանութեան թևարկու լինիջիք միշտ. և մի 'ի յաջողելն միայն՝ ձեռն յանձին հարեալ ապարթանել՝ իբրու հաւասար կցորդ գոլ խոհական խորհրդոյն: Զէ ինչ անհաւան եթէ արտաքոյ մարդկայնոց խորհրդոց 'ի վեր երևեսցին դէպք կեղակարծք, յորս և սովոր եմք իբրու յանակնունելիս բողոքել զբաղդէն: Յառաջնմէ իսկ ծանուցեալ խորամանկ նենգութիւն Լակեդեմոնացւոց առ մեզ, ոչ ինչ պակաս 'ի յայտ եկն և այսօր. փոխանակ օրինօք իրաւախոհութեամբ վախճան առնելոյ գժտութեանց՝ ունելով իրաքանչիւր զիւրն, նոքա ոչ զիրաւունս խնդրեն, և ոչ 'ի տալն մեր ընդունին. զինուք մանաւանդ քան բանիւք խաղաղութեան՝ կամին կարճել զբողոք ամբաստանութեանցն. և ոչ եթէ բողոքարկուք, այլ այժմէն իսկ հրամանատուք առ մեզ գան: Քանզի պատուէր տան մեզ բառնալ զպաշարումն Պոտիդեայ, յազատութիւն իւր թողուլ զԵգինէ, և խափանեալ ջնջել զվճիռս հակառակ Մեգարացւոց. և վերջինքն 'ի պատգամաւորաց օրէնս ևս 'ի վերայ յաւելուն՝ յինքնուրոյն վարչութեան թողուլ զՀելլէնս: Մի՛ ոք 'ի ձէնջ համարեսցի յամառելով պինդ ունել զվճիռս մեր ընդդէմ Մեգարացւոց՝ վասն չնչինոյ գալ 'ի կռիւ. մանաւանդ յորժամ քարոզեն նոքա թէ 'ի բառնալ վճռոյս՝ բարձցի և պատճառք պատերազմին: Մի՛ ոք 'ի ձէնջ համարիցի իրա-

ւուն տալ՝ որոց զկնի գալոց են ազգք՝ եպերելոյ զձեզ, զի փոքումբք և չնչենովք 'ի պատերազմ գրգռիք. զի փոքրս այս զհաստատութիւն և զփորձ խորհրդոց ձերոց յայտանէ: Որոց եթէ տեղի տայցէք, խստագոյն քան զայս հրամանս 'ի վերայ յաւելուցուն, որպէս եթէ առ երկիւղի և այնոցիկ անսայցէք. այլ եթէ պնդութեամբ զդէմ կալջիք, յայտնագոյնս տայք իմանալ, եթէ որպէս հաւասար ընդ հաւասարս այնպէս արժան է գնալ նոցա ընդ ձեզ:

ճԽԱ. «Աստի ապա 'ի միտ առնուլ է մեզ, զի կամ չև տարեալ իմիք վնասու՝ հնազանդել միայ նոցա, և կամ թէ 'ի կռիւ գայցեմք. զոր և ընտրելագոյն համարիմ խորհուրդ, ոչ փոքու և ոչ մեծաւ տեղի տալ նոցա, և մի՛ ահիւ երկիւղի ունել զոր ունիմքս: Զի ստրկութեան է նշանակ՝ թէպէտ ծանր թէպէտ թեթև, 'ի հաւասարից առանց դատաստանի 'ի վերայ եդեալ մեծասաստ հրամանին անսալ: Իսկ յառաջիկայ պատերազմիս, և երկուց իսկ կողմանց մանր քննեալ զզօրութիւն՝ խելամուտ լինիցիք թէ չեմք ինչ խոնարհագոյն քան զնոսա: Համայն իսկ Պելոպոնեացիք 'ի ձեռաց արուեստէ կեան. ոչ առանձին և ոչ հասարակաց գոյք են նոցա արծաթոյ: Անփորձք դարձեալ երկարժամանակեայ և անդրագոյն քան զծով՝ ածելոյ զէնս. զի առ աղքատութեան կարճատև են առ նոսա կռիւք. որոց չէ մարթ ոչ գումարտակս նաւաց հանդերձել, և ոչ յաճախ երկրախումբ բանակս արձակել. զի հեռի 'ի բացեայ յիւրեանց կալուածոց՝ զիւրեանց ծախեն ինչս. և ևս փակեալ արգելեալ է նոցա ծով: Զի մեծութեամբ առձեռն պատրաստական գանձուց, և ոչ 'ի բռնի հարկաց՝ յոտնկան պատերազմունք: Եւ ոյք 'ի ձեռաց արուեստէ կեան, մարմնովք առաւել քան եթէ ընչիւք կազմք 'ի կռիւս գտանին, զի ակն ունին փախստեամբ ապրել 'ի վտանգէն. յորում վասն ծախուց արծաթոյ՝ չէ նոցա յայտ եթէ վաղ իսկ չվատնեսցեն զայն. մանաւանդ յորժամ քան զկարծիս՝ որպէս 'ի դէպ է, երկարեսցի նոցա պատերազմն: Հզօր են

Պելոպոնեսացիք և դաշնաւորք նոցա՝ 'ի միում ճակատամարտի ընդ Հելլենացիս առ հասարակ գուպարելով. բայց թէ տեւեսցեն տոկասցեն ընդդէմ հաւասարազօր պատրաստութեան ընդ երկար 'ի կռիւ, ոչ միով խորհրդով վարելով և ոչ արագ 'ի կատարումն խորհելեացն, ամենեքեան հաւասարք 'ի քուէս, և ոչ համացեղք տոհմայինք այլ և այլ ունելով դիտմունս շահուց. յորմէ 'ի դէպ է՝ զի ոչ մի ինչ մեծ և կատարեալ յարդիւնս գայցէ: Մինչ կէսք պատուհասակոծ առնել կամիցին քաղաք մի յանցաւոր, և այլք 'ի վնասուց անտի խիթալով խորշիցին: Յամր են նոքա 'ի խմբել, չոյտք 'ի վեր 'ի վերոյ խորհուրդս, և յառաւելն գործս իւրեանց բազմահոգք: Մէն մի 'ի նոցանէ յիւրեան անփութութենէ չկարծէ վնասել իրաց հասարակաց, զայլ ոք երկրորդ նախահոգակ նմին համարելով. և բոլորից համայն մի ըստ միոջէ զայս այսպէս խորհելով՝ չտեսանեն զանհամար չարիս հասարակաց:

ՃԽԲ. « Չքաւորութիւն արծաթոյ խոչընդոտն իցէ նոցա մեծապէս. և 'ի պարապել 'ի հայթհայթանս նորին, ընդ վայր ժամավաճառ լինիցին. քանզի չգիտեն յամել դէպք պատերազմի: Դարձեալ և ոչ յամուրս ապաւինացեալս և ոչ 'ի նաւական զօրութեան կարեն երկեղուկս մեզ արկանել. որ 'ի խաղաղութեան անգամ գործ դժուարին է՝ նախանձորդ քաղաքի ընդդէմ ամուրս կառուցանել, քանի՜ն ապա 'ի վերայ թշնամի հողոյ՝ ոչ ինչ պակաս պատնիշօք և պատուարովք ամրացելոյ: Եթէ յաջողեսցին ևս ամրոցս և պահանորդս 'ի սահմանագլուխս երկրիս հաստատել, նեղել նեղեսցեն զկողմն մի ասպատակաւ և դասալիք փախստէիւք մերովք, այլ չկարասցեն փակել արգելուլ ընդ ծով առաջի բազմախումբ նաւաց մերոց՝ որով զօրաւորք եմք. և զքէն վրիժուն արշաւանօքս մերովք 'ի նոցանէ հանիցեմք. քանզի մեք նաւաստեօքս 'ի ցամաքի առաւել փորձ գտանիմք, քան եթէ նոքա ցամաքախումբ բանակաւ 'ի ծովու: Եւ չլինիցի նոցա այնպէս դիւրեաւ 'ի հմտութիւն

նաւաստականութեան ժամանել. որպէս և ոչ դուք ինքնին, թէպէտ յետ մարական պատերազմին՝ 'ի նոյն անդէն թեւակոխեցէք, յաջողեցայք ինչ ցայժմ 'ի ծագ կատարելութեան հասանել. զի՞րդ ապա արք անապատական աշխատութեանց գործաւորք և ոչ ծովայինք, և առաւել ևս՝ չթողլով նոցա պարապ մարզել 'ի նոյն՝ յերեսաց հանապազորդ արշաւանաց բազմութեան նաւաց մերոց, արժանաւոր ինչ գործ գործել կարասցեն: Ամբոխի բազմութեան խրախուսեալ զանվարժ անգիտութիւն՝ դիմել դիմեսցեն 'ի վերայ սակաւաւոր պահանորդաց մերոց 'ի ծովուն. այլ 'ի հզօր գումարտակաց նաւացս պաշարեալք՝ արգելուցուն անխաղացք. որով 'ի չգոյէ մարզից հրահանգաց անփորձք՝ և ևս դանդաղագոյնք լինիցին: Նաւականին արուեստ, որպէս և այլք յարուեստից, չառնուն բնաւ զարգացումն ըստ դիպաց և պիտակաբար մարզիւք, ուր մանաւանդ չմիաբանի երբեք ընդ այլում եկամուտ օտարոտւոյ:

ՃԽԳ. « Եթէ ձեռնարձակութեամբ իսկ 'ի գանձս մեհենին Ոլիմպեան Արամազդայ և Դելփեայ՝ փորձեսցեն նոքա մեծագոյն վարձուք կաշառել զնաւաստին մեր այլազգի, յայնժամ արդեօք խիթալի լինէր այս, երբ չէր մեր զօրութիւն հաւասար, ամբառնալով 'ի նաւս և զեկս մեր բընակս քաղաքիս ընդ մեզ. է մեզ և այս առաւելութիւն մեծ և կարևոր, զի ղեկավարք մեր 'ի քաղաքացեաց մերոց են, և նաւաստի ընտիր և բազմաթիւ քան զբոլորից այլոց Հելլենացւոց: Եւ զի 'ի վտանգին՝ ոչ ոք յեկաց անտի մերոց, անհաստատ յուսով վասն սակաւօրեայ ինչ աւուրց առաւելագոյն ռոճկի, օտարացեալ 'ի հայրենեաց՝ երթայցէ խըմբել ընդ նոսա:

« Այս և այսպիսի ահա թուի ինձ լինել Պելոպոնեսացւոց պայման. իսկ մերս ազատ ամենևին յայսցանէ՝ որով բամբասեմքս զնոցայն, ունելով և այլ ինչ մեծ և անզուգական. զի եթէ ընդ ցամաք հինաբար կոխեսցեն նոքա զերկիր մեր, մեք ընդ ծով զնոյն հատուսցուք նոցա հաւա-

սար հատուցումն· և առաւելուցու իսկ աւերած կողմանց Պելոպոնեսացւոց քան ողջոյն Ատտիկեայ։ Չիք նոցա այլ երկիր փոխանակաւ վարելոյ հանդարտութեամբ· իսկ մեր բազմապատիկ են և 'ի կղզիս և 'ի ցամաքի, զի մեծ է զօրութիւն ծովուն։ Խորհեցարո՛ւք միանգամ, զի եթէ կղզայինք էաք, ո՞ք արդեօք քան զմեզ անըմբռնելիք լինէին· վասն որոյ պարտ է մեզ ըստ կարի 'ի մերձաւորագոյն գալ պայման· զանդաստանս և զբնակութիւնս մեր զարձակավայրս թողեալ, ծովու և քաղաքին պահ ունել զգուշութեամբ· և մի՛ ընդ աւերածս և ընդ կորուստ նոցա զկծեալք՝ ելանել ցասմամբ 'ի վերայ Պելոպոնեսացւոց 'ի գուպար՝ 'ի վերայ ամբոխի բազմութեան առաւելլոյ քան զմեզ· զի եթէ և յաղթողք լիցուք, մնայ մեզ միշտ դառնալ ընդ հուպ 'ի կռիւ ընդ նոյնչափ ևս ամբոխի մարդկան· իսկ եթէ պարտեալք՝ անհրաժեշտ է կորուստ դաշնաւորացս, յորս միակ զօրութիւն մեր է· զի չհանդարտեսցին նոքա երբէք, եթէ չիցեմք բաւական զօրս ընդ զօրաց նոցա հանելոյ։ Եւ մի՛ զբնակութեանց և զանդաստանաց, այլ զանձանց կորուստ ողբասջուք· զի ոչ եթէ սոքա զմարդիկ, այլ մարդիկ զսոսա ստանան։ Որ եթէ հաւատայի դիւրեաւ զձեզ 'ի հաւանութիւն ածել, յորդորել յորդորէի զձեզ արդեօք՝ ինքեանց ձեռօք ելեալ աղարտ վարել զերկիրն, և տալ 'ի միտ առնուլ Պելոպոնեսացւոց, զի ոչ վասն այսոցիկ ամենայնի խոնարհեալ հպատակիցէք ինչ նոցա երբէք։

ՃԽԴ. «Յոլովագոյն և այլ պատճառք են իմ 'ի յոյս յաղթութեան, միայն եթէ 'ի պատերազմունդ չյօժարիցիք յաշխարհակալութիւն· և մի՛ 'ի կամաւոր վտանգս առեալ ձգիցէք զանձինս, զի քան 'ի խորհրդոց հակառակորդաց՝ 'ի մերոց վրիպակաց երկնչիմ։ Այլ 'ի դէպ ժամուն, ըստ պայմանի իրացս, դարձայց՝ և յարդեանց իսկ գործոց, բացայայտագոյնս եդից ձեզ զայն զայս բան առաջի։ Առ այժմ պատգամաւորս առ նոսա պատասխանեաւս արձակեսցուք· զի թողութիւն Մեգարացւոց արասցուք՝

մուտ 'ի վաճառս մեր և 'ի նաւահանգիստս տալով, եթէ և Լակեդեմոնացիք ոչ օտարատեսութեամբ ընդ մեզ և ընդ դաշնաւորս մեր գնասցեն. զի Թէպէտ և 'ի դաշինս ուխտին չէ յիշատակ զայսմանէ, Թողցուք և զքաղաքս յազատ 'ի նոցին վարչութիւն, զորս յառաջ քան զդաշինս ազատս գտաք, յորժամ և նոքին Լակեդեմոնացիք Թողցեն քաղաքաց՝ ոչ ըստ իւրեանց Լակեդեմոնացւոց քաղաքավարութեան յինքնօրէնս լինել, այլ իւրաքանչիւր ըստ հաճոյս ընտրել զոր ախորժէն: Ըստ ուխտի դաշանցս կամիմք յիրաւախոհութիւն գալ, և ոչ նախաձեռն 'ի կռիւ լինել. բայց սակայն և ոչ 'ի վանել 'ի մէնջ զզէն անիրաւ՝ յետնեալ երևեսցուք: Զայս արդար և վայելուչ քաղաքիս արասջիք նոցա պատասխանի. բայց և արժան է գիտել, զի անհրաժեշտ է պատերազմս. զոր եթէ կամակար մտօք յանձն առնուցումք, ոչ այնչափ Թերևս խրոխտասցի Թշնամին, և 'ի մեծագոյն վտանգաց՝ մեծ ևս փառք և քաղաքիս և քաղաքացւոցս ժառանգեսցեմք: Ապաքէն հարքն մեր 'ի վէգ եկին ընդ Մարաց, ոչ այժմեանս ունելով զօրութիւն, այլ մանաւանդ յամենայնէ զրկեալ՝ զոր և ունէին, խորհրդով յաջողեցան քան եթէ բաղդիւ. մեծաւ համարձակութեամբ՝ քան զօրութեամբ ուժոյ վանեցին զբարբարոսն, և յայս ամբարձան 'ի մեծութիւն: Մի յետնեալք ապա քան զնոսա գտանիցիմք, այլ զամենայն ճիգն դիցուք վանել 'ի մէնջ զԹշնամին. և մի՛ խոնարհագոյն քան զոր առաքս՝ աւանդել զայն որդւոց մերոց և Թոռանց »:

ճԽԵ. Օրինակ զայս խօսեցաւ Պերիկլէս. և հաւանեալ Աթենացիք ընդ քաջախորհուրդ առաջարկն, ըստ այնմ արկին քուէայս. և արարին ըստ խորհրդոց մտաց նորա բան առ բան պատասխանի Լակեդեմոնացւոց: Ի կարճոյ ասելով՝ Թէ չկամին պատուէրս հրամանաց ընդունել. և Թէ պատրաստք են ըստ դաշանց՝ հաւասար օրինօք արդարութեան՝ վախճան առնել գժտութեանց եղելոց 'ի միջի:

ճխզ. Այս էին ահա բողոքք աստի և անտի երկոցունց կողմանց, և պատճառք գրգռութեանց և պատերազմին, որ յիրաց անտի Եպիդամնեայ և Կորկիւրացւոց սկիզբն էառ: Սակայն դեռ ևս յաճախէին առ միմեանս յերթևեկս կցորդութեան՝ առանց նուիրակի կամ պատերազմական քարոզի, թէպէտ ոչ իսպառ անկասկածք. զի այնուհետև խառնուրդ իմն էր դաշանց խաղաղութեան և գրգռութեան մարտի:

---